

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Նա բոլորինն է...

Մի մանուկ է նայում այս նկարից,
Մանուկ, որ ծանոթ է մեզ բոլորիս։
Ես որդուս եմ դիմում.
— Նրան գիտե՞ս։
Նեղանում է. իբր
Ո՞վ չգիտե։
— Լենին պապիկն է նա,
Հո նոր չե՞մ ճանաչում։

— Փոքր է,— ասում եմ ես,—
Ինչո՞ւ ես պապ կոչում։
— Նա պապիկ է, ու վերջ,
Փոքր լինի թե մեծ։
Համոզմունք եմ տեսնում
Որդուս աչքերի մեջ։
... Մի մանուկ է նայում այս նկարից,
Մանուկ, որ պապն է մեր բոլորի։

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 4 86



Հանձնված է տպագրության 17.1.1986 թ.: Ստորագրված է տպագրության 7.IV.1986 թ.: ՎՖ 05408: Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{16}$: Տառատեսակը՝ նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69532: Պատվեր՝ 102: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 17.I.1986 г. Подписано к печати 7.IV.1986 г. Формат $70\times100^{1}/_{16}$. ВФ 05408. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69532. Заказ 102. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ




Նկարը՝ ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Թռչում են կռունկները, կռլնկալով թռչում են կռունկները: Որտեղի՞ց են գալիս, ո՞ւր են գնում: Ովքե՞ր են ճամփու դրել, ո՞վ ունեն սպասող: Թռչում են: Չեն թռչում: Սահում են: Կապույտ երկնքով սահում են: Չեն սահում: Հոսում են:

Սարի ճամփից թեքվել եմ, հասել մեր հին գյուղատեղը: Կռունկների ձայնը լսելուն պես հենվել եմ մի հին կաղնու... Կռունկնե՛ր, ծնկներս ծալվում են: Կաղնի, արմատիդ ուժից մի քիչ ներարկիր: Երկնքի ծալ-ծալ խորքերում, հի՛ն, ազնիվ կապույտներում տես, թե ո՛նց են թևում կռունկները: Կռլնկոցի մեջ կապույտ անձրևներ կան, անձրևը ձայն ունի, ձայնը նստում է մեր սարերին, անտառներին: Ձայնը կաթում է աղբյուրների մեջ, արթնացնում աղբյուրների հին-հին շշուկները: Կռլնկոցի մեջ մի ուրիշ արև կա: Գարնանը, արևը երբ առաջին ճառագայթներով կաթում է մեր սարերին, անտառներին, մի ձայն է լսվում, արևի ձայն, բառերն անգամ քիչ է մնում հասկանաս: Կռունկներից քամված ձայնը արևի մեջ մտած հասնում է քեզ: Ջերմացնող փշաքաղ'անքը մտնում է արյանդ մեջ:

Թռչում են կռունկները, կռլնկալով թռչում են կռունկները: Իրենց հի՛ն, երկնային ճամփով, իրենց նախնիների հանգած ձայներն արթնացնելով ու նրանց ձայների մեջ մտած, ձայներն իրենց ճամփա ու



բնազդ դարձրած՝ թռչում են կռունկները:

Առավոտյան արև էր, սառը արև, մարտյան սպասած արև: Մեկ էլ հանկարծ սկսեց բանջարփուշը՝ Նանս կասեր՝ գիժ մարտը պառավի ուլերը ջարդեց: Հա, ուղարկել է, որ գա պառավի ուլերը ջարդի: Արև էր, անձրևի նման վարար ձյուն էր գալիս, խոշոր փաթիլներով: Ձյունը կարկուտ դարձավ, կարկուտը փոքրացավ, դարձավ անձրև: Արևը վե-

ռւններում շուլալվել էր ամպերին, կորել էր, բայց ձյան, կարկուտի, անձրևակաթոցի մեջ լիքը արև էր, լույս էր: Լույս էր լույսի մեջ, արև էր արևի մեջ՛

Ես դուրս եկա տնից, ճամփա ընկա, գլուխս ետ պահած, բերանս բաց, լեզուս հանած բռնում էի ձյան տաք փաթիլները: Ծամփեզրերին ձնծաղիկներ տեսա, որոնք բացել էին աչիկները և ցուրտ վախով, անմեղությամբ նայում էին բնության խաղերին:

Կարկուտը պրծավ, անձրևը պրծավ, պատավի ուլերը ինչ-որ տեղ մկկում են:

Մտա անտառ: Անտառն իր թաց ճամփով ինձ իր խորքերը տարավ, ապա հանեց հին գյուղատեղի տակ:

Հին գյուղատեղ:
Հին ջրաղացատեղ:
Հին սղոցարան:
Հին փայտկարան:
Հին գերեզմանոց:
Հին խնձորկուտ...

Հի՜ն-հին: Եղել է: Ինչ-որ ժամանակ: Հեքիաթի ոճը թելադրում է հի՜ն-հին «եղել է, չի եղել»-ը:

Հին-հին քարերին հասա, մեր հին պապերի մանկությունն իրենց ճյուղերին պահած կաղնիներին հասա ու լսեցի հին կռունկների ձայնը: Կռունկների ձայնը՝ հարազատ, կանչող: Մարդու մեջ մանկության հազար ձայներ են մարում, ջրերի ձայնն է մարում, անտառի ձայնն է մարում, մեծերի ձայնն է հանգչում, նախնիների ձայնն է ննջում քո սրտի անձավներում... Հետո, մի օր, զգում ես, որ ոչ մի ձայն էլ չի մարել: Հիմա էլ քո գլխավերևում կռունկների չուն է գնում: Նրանց ձայնը քո վրա է թափվում գարնան գոլ անձրևի պես, արևի խուրձ-խուրձ ճառագայթների նման: Այդ ձայնն այս աշխարհի աղմուկների մեջ չի մարել, չի խամրել, անգամ մոռացել ես, որ քո մեջ սարերի ձայն կա, ջրերի ձայն կա, կռունկների ձայն կա...

●●●

Էն հի՜ն հեքիաթների հազարան բլբուլին էլ, էն այգու թռչուններին էլ, էն երկնքի անտուն թևավորներին էլ, բոլոր հավքերին նանս ղուշ էր ասում: Ինքը ղուշ էր ասում, բայց մեզ ի՞նչ էր ասում: Ասում էր.

— Հիմա էլ յոթը քայլ արա: Ամեն քայլի հետ մի ղշի անուն ասա:

Հասկանում էինք՝ սկսվել է մեր դասը: Կտրվել չկա: Նանին նեղացնել չկա: Հազար գործ ունի: Հազար գործ թողել, եկել, մեզ խրատ է կարդում:

Քայլ եմ անում: Հազար թռչուններ են թռչում իմ գլխավերևով, և առաջին քայլի հետ ասում եմ՝ ղուշ: Նանս ձեռքն ափ արած, մատները բացած մեկնում է.

— Կաց, ետ գնա: Թող ուրիշը գա: Դու արի: Ղո՜ւշ: Ղո՜ւշ՛ Ղուշն անո՞ւն չունի: Մարդ: Դու մարդ ես: Մարդն անո՞ւն չունի: Ղշերի անունները ասելով գնա:

Մեկ, երկու, երեք, չորս, հինգ, վեց, յոթ ասելու փոխարեն մենք յոթ թռչունի անուն էինք շարում: Յոթ թռչունի, յոթանասուն թռչունի անուն էլ գիտեինք, միայն թե անուններն էլ թռչունների նման հանկարծ մեր մտքից թռչում-գնում էին: Սարյակ, կաչաղակ, հոպոպ, ծիծեռնակ, կաքավ, խլահավ, կռունկ... Կռունկ... Նանս մեզ հազար է ասել՝ կռունկի անունը չտաք: Բոլոր հավքերը նրա մոտ ղուշ են, իսկ կռունկը կռունկ է: Ամեն մարդ նրա անունը պիտի չտա: Պիտի լավ գործ արած լինես, լավ սովորած, անցորդին լավություն արած, այգին ջրած, պատվաստ արած... տան ու դռան հազար գործ... որ կռունկի անունը տաս...

Թռչունների անունները մեր լեզվի վրա են: Հա, ասենք, թե ջրի նման անգիր արեցիր: Բայց ճանաչո՞ւմ ես: Կարո՞ղ ես ընկարել: Ա՜յ քեզ նանի: Դե, տղա ես, փորձիր նրանց ճանաչել ձայներից: Կըկվինը կարող ես, որովհետև կկուն իր անունն է տալիս, ուրիշ անուն չկա նրա համար՝ կուկու, կուկու: Փայտփորիկի գործից կհասկանաս: Իսկ մնացածնե՞րը: Ծաղ-կղա, կաղ-կղա, կաքավ կա, հարայ-հուրույ գցող ուրուր կա...

Նանս մեզ ի՞նչ էր սովորեցնում: Ասում էր՝ քայլ արեք, յոթ քայլ, ամեն քայլի հետ մի ծաղկի անուն հիշեք:

Մենք հերթով քայլ էինք անում: Ամեն քայլի հետ մի ծաղկի անուն էինք ասում: Մեր սար ու ձորերը լիքը ծաղի՞կ: Ծաղկաձորեր ունենք, ծաղկակալեր, որ բուրմունքից ուշքդ կգնա: Ի՞նչ օծանելիք, ի՞նչ օծվածություն: Փնջի՜ր, փնջի՜ր, փնջի՜ր, հազարանուն, հազարագույն... Եթե քայլի հետ ծաղկի անունը չտայինք, խաղից դուրս էինք մնում: Ինչքան էլ լացակումած ասեինք՝ ախր, իմ սիրած ծաղկի անունը լեզվիս վրա է, բույրն էլ զգում եմ, մեկ է՝ կտրված ես...

Մենք մտքով մանուշակ էինք փնջում,

քարապուտ, անթառամ, խնկածաղիկ, վարդ, նարգիզ… Անանուն ծաղիկներին էլ մենք անուններ էինք կպցնում։

Նա՛նս, նա՛նս… Ձեռքը կտաներ գոգնոցի փեշը, բուռը փակ կմեկներ քեզ։ Հասկանում էինք անխոս։ Պիտի մատներից հոտ քաշենք ու ասենք, թե փեշում ի՞նչ կա՝ դա՞ղձ, ո՞ւրց, մասո՞ւր։

Նանս մեզ նաև ասում էր՝ քայլ արեք, յոթ քայլ, ամեն քայլի հետ մի ծառի անուն տվեք։

Յոթ ծառ չէ, յոթանասուն ծառի անուն կտանք։ Էս մենք, էս էլ մեր անտառները։ Կաղնի, հաճարենի, բոխի, հացենի, ճապկի, դրախտածառ, թեղի, լորենի, թզենի, թխկի, կեչի…

Հետո՝ «ամեն քայլի հետ մեր այգու ծառերի անուններն ասեք»։

Հետո՝ «ամեն քայլի հետ մեր գյուղի սիրված մարդկանց անուններն ասեք»։

Հետո՝ ամեն քայլի հետ ջրաղաց ասա ու ջրաղացպան Տիգրան, գութան ասա ու մաճկալ Ղարիբ, երգ ասա ու երգասաց Մանյակ, հեքիաթ ասա ու հեքիաթասաց Արտեմ, նվագ ասա ու զուռնաչի Արտաշ, դհոլչի Վանո, ուսուցիչ ասա ու ուսուցչուհի Անիկ, խաղ ասա, խաղ ասա ու նայիր, ու նայիր, շատ նայիր խաչքար երեսով իմ Նանին…

Գոգնոցի գրպանում պահած «մրցանակն» տանում էր նա, ով ամեն քայլի հետ շրխկալով անուններ է ասել։ Նոր հավքերի անուններ է հիշել, նոր ծառերի, նոր ծաղիկների, ով ճանաչել է գյուղի ամենաուժեղ հնձվորին, ամենալավ հյուսնին, ամենաբարի մարդուն։

Ամեն քայլի հետ մի հանդի անուն էինք ասում, մի աղբյուրի անուն էինք հիշում։ Որ հանդի ճամփան բռնում էինք ու որ աղբյուրից ծնկում, ջուր էինք խմում, ըզգում էինք, որ մեծանում ենք՝ այդ հանդերում մեզ վար ու ցանքս է սպասում, հունձ է սպասում, սեղմում էինք մեր մըրկաները և փորձում էինք քայլել կըտրիճավարի։

Ասում էինք.

— Այ նանի, գյուղում վատ մարդիկ էլ կան, նրանց անունները տալով յոթ քայլ անե՞նք։

Նանս խաչակնքում էր.

— Վո՛ւյ, վո՛ւյ, վո՛ւյ, յոթ վատ մարդ աշխարհիս երեսին չի լինի, մեր պուճուր գյուղում որտեղի՞ց լինի։

— Անուննե՞րով ասենք,— համառում էինք։

— Ձեռներդ, ձեռներդ կտրեք, գործ չունեք, գել ու գազանի անունը տվեք, խաղացեք, դրանց անունները մի տվեք։

●●●

Թռչում են կռունկները։

Երկնքի կապույտով սահում են կռունկները։

Ես ձեզ նայեցի ու իմ նանին հիշեցի, կռունկներ։

Իմ մանկությունը ու իմ մանկությունը կարմիր-կանաչ աշխարհ դարձրած կըռունկներին հիշեցի, կռունկներ։

Ուր էլ գնաք՝ բարով գնաք… Նանս, նանս, ինձ թվում է՝ հիմա մի տեղ կանգնել է, ձեռքը ճակատին ամպհով աչել ու նայում է…

— Կըռըլը՛խկ…

Կըռըլը՛խկ…

Կըռըլը՛խկ…

Ո՞վ էր ասում. կռունկներից մեկը թե զգում է, որ իր թևերը համաչափ չեն ծըփում, ուժը պակասել է, ընթացքի հետ շունչը նվազում է, դանդաղ իջնում է, իջնելով ետ է մնում՝ հայացքը իր նախնիների երկնքոտ ճանապարհին։

Երբ փոքր էի, մեր երկնքով շատ էին անցնում կռունկները։ Նանս ասում էր՝ իրենց ճամփան է, այ որդի, պիտի գնան երկնքի էդ թաղլան ղշերը։ Մարդն էլ պիտի անցնի իր ճամփան։ Կռունկներն անցնում են վերևով, ծափ ու ծիծաղի վրայով, հոգսերի վրայով, ցավերի վրայով, աշխարհների վրայով, ծովերի, ցամաքների վրայով, գնում են իրենց բաժին ճամփան։ Մարդիկ էլ են անցնում ծափ ու ծիծաղի միջով, հոգսերի միջով, ցավերի միջով։ Գնում են մարդիկ, և եկողներին թվում է, թե նրանք հեշտ են անցել, դըժվարն իրենցն է։

Ումի՞ց ենք լսել։ Չենք էլ լսել։ Ի ծնե գիտենք։ Ու թե ի ծնե մեջդ մի չար բան կա, հենց լսում ես կռունկի չուի ձայնը, շտապ մի քար ես ձեռքդ առնում։ Նայում ես վերև և նետում… Խճճվում է կռունկների չուն։ Նրանց ձայներից երկինքը պատառ-պատառ է լինում, առաջնորդը չարչարվում է, որ երամը նորից հավաքի, հեռու ճամփա գնացողի երամ դարձնի, թևերով, ձայնով կոչ է անում, որ չխառնըվեն, չվախենան, ամեն մեկն իր տեղը գտնի… Քարը նետողը խղճի խայթ է ըզգում։ Ձեռքը դնում է խղճին՝ «թե մեկ էլ նման մի բան անեմ, թող երամից ետ

մնացածը ես լինեմ»: Ծաղընցած երամից մի երկու կռունկ միշտ ետ են մնում: Նանս անիծում էր քար նետողին: Ասում էր՝ ձեռներդ կոտրվեն:

Երկնքում շաղված կռունկների չու: Չուի աղեկտուր ձայն:



Թռչում են կռունկները՝ Թռչում են կապույտ երկնքով: Գնացին, ձուլվեցին երկնի կապույտին, անհասին: Բայց ձայնը անձրևի նման, արևի ճառագայթների նման թափվում է մեր հին սարերի վրա, աշխարհի վրա:

Մյուս օրը արևոտ էր: Գարնան եղանակ էր: Կռունկների հեռացած ձայնն ինձ կանչում էր: Գնացի, մեր հին գյուղատեղը հասա, մոտեցա իմ հին, կայծակնահար կաղնուն: Նրան հենվում ու նայում եմ երկնքին: Կաղնուն նայելով վեր եմ ձըգվում, և նկատեցի, որ երամից ետ ընկած կռունկն իջել է մեր հին գյուղատեղի հին հանգստատան խաչքարին: Հոգնած է, թևաբեկ: Էս մեծ աշխարհը թողած մեր հին գյուղատեղի խաչքարին է իջել: Ջեն տամ, գնամ, ասեմ՝ ես իմ նանի թոռն եմ, նանս ձեզ շատ էր սիրում: Ասեմ՝ նանս ձեզ չէր խառնում երկնքի մյուս թևավորներին: Դուք ուրիշ էիք, դուք սուրբ էիք...

Մեկ էլ թվաց, թե նանս երեկվա չուի հետ թռել-գնացել է, մեկ ըլ այնպես թվաց, թե նանս խաչքարին իջած այս կռունկն է: Մեկ ուզում էի ձեն տալ՝ նանի՜, բայց զգացի, որ ձայն չունեմ:

Նստեցի մի թաց քարի ու երկար նայում էի: Կարմիր պուտի նման կարմրությունից երևաը պուտ կտրած մանուկը չկա, էստեղ գյուղ է եղել, չկա, գյուղատեղ է դարձել, հին գյուղատեղ, մեզանից, է՜, ինչքան ժամանակ առաջ են ապրել, հին ջրաղացատեղը կա, կալ ու կամի տեղր ջոկվում է, փայտկարանր կա, հին կաղնին կա՝ ծերացած, կայծակնահար նահապետի տեսքով: Նանս, նանս կըռունկ է դարձել ու մեր նոր գյուղից եկել-իջել է հին գյուղատեղի ճաք տված խաչքարին:

Ես ուզում էի տեսնել կռունկի աչքերը: Բայց հեռու էի: Իջա, ջուր խմեցի դեռ ձընահամ մեր աղբյուրից: Աղբյուրր վճիտ էր: Հիշեցի հին խոսքը՝ վճիտ, ինչպես կռունկի աչք:

Գուցե մեր աղբյուրն էլ կռունկի արցունքի՞ց է գոյացել: Թե չէ ինչո՞ւ ենք կոչում՝ Հին գյուղատեղի կռունկի աղբյուր:

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Ուր էլ որ լինես

Շքեղ տոներում ու վայելքներում,
Հոգսերի մեջ ու տխրության պահին,
Թող հայրենիքի մասին մի միտք
Քո ուղեղում միշտ հերթապահի:

Ուր էլ որ լինես, դժգոհ, թե գոհ,
Մոռացված և կամ՝ փառքի գահին,
Թող հայրենիքի մասին մի միտք
Քո ուղեղում միշտ հերթապահի:

Որպեսզի վստահ լինես վաղվան,
Գալիքին նայես առանց ահի,
Թող հայրենիքի մասին մի միտք
Քո ուղեղում միշտ հերթապահի...

Եվ հավատա, որ երբեք նրան
Ոչ մի վատ բան էլ չի պատահի,
Թե հայրենիքի մասին մի միտք
Մեր ուղեղներում հերթապահի:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





## ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԱԳՐԻՑ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

### ԱՐԱՔՍԸ ՍՈՍԿ ԳԵՏ ՉԷ

Ութերորդ դասարանին անգիր եմ հանձնարարել «Արաքսի արտասուքը» բանաստեղծությունն ու սովորականի պես՝ հերթականությամբ կարդալով ազգանունները, հարցնում եմ:

Տղան, որից չէի սպասում, կրքոտ արտասանում է բանաստեղծությունը: Ու ես հափշտակված լսում եմ, ապա հարցնում.

— Ի՞նչ է պատահել:

Թախծոտ աչքերը ժպտում են:

— Ես շատ եմ սիրում Արաքսը: Ավելի քան հարյուր հիսուն տարի առաջ մեր նախնիների լքած գյուղը՝ Քյոլլին, որն հիմա ավեր ու ավերակ է, մնացել է Արաքսի ափին:

— Ես էլի բանաստեղծություններ գիտեմ Արաքսի մասին,— ասում է տղան ու իրար ետևից արտասանում. «Մեր դարերից, մեր, սարերից ու մեր սրըտից կիջնես, Արազ...», «Արազն եկավ լափին տալով...», «Արազ, տակդ մի փորե, առանց այն էլ շատ խոր է...» ու վերջում.

**Ախ, ես ինչ ասեմ անսիրտ**
**Արազին,**
**Որ սիրտս կիսած անցնում**
**է միջով:**

Տղան հանկարծակիի է բերել ինձ, ու այդ պահին նա իմ աչքին թվում է դեպի ակունքները լողացող կարմըրախայտ, որը լողում է հասնելու... ինքն իրեն: Այդ ամենը հավանաբար սկսվել է այսպես. տղան մանկությունից լսել է տատի պատմությունները. «Այն գյուղը, որտեղից եկել են մեր պապերը, եղել է մի գետի ափին: Այն տան մեջ, որտեղ ապրել են մեր պապերը, եղել է մի աղբյուր: Գոմօդաջի հիմնաժայռի տակից բըխող ջուրը հոսել է գոմի միջով ու պատի ագուկայից դուրս գալով, խառնվել է այդ գետին»: Տղան չգիտեր, թե այդ որ գետն է: Մի անգամ քարտեզներից մեկի վրա կարդում է գյուղի անունը՝ Քյոլլի:

— Ահա մեր նախնյաց գյուղը՝ գետի ափին, Սերմաց սարի հյուսիսային փեշին, իսկ գետը Արաքս գետն է... Ուրեմն, իմ տատի ասած ձկնառատ ու զուլալ

գետը Արաքսն է, ու այն առասպելական տան միջից բխող աղբյուրը՝ Արաքսի բյուր վտակներից մեկը...

Այն օրվանից աշխարհի ամենաերկար գետը ոչ թե Միսիսիպին է՝ իր Միսսուրի վտակով, այլ՝ Արաքսը... Այդ օրվանից աշխարհի ամենաջրառատ գետը ոչ թե Ամազոնն է, այլ՝ Արաքսը: Աշխարհի ամենախոր, ամենաքաղցրահամ, ամենազուլալ, ամենագեղեցիկ և, վերջապես, ամենատղմուտ գետը... Դա ինքն է՝ առասպելական, կամուրջ չհանդուրժող Արաքսը... Արաքսը գալիս է այնտեղից, որտեղից եկել են մեր նախնիները:

Զանգն հնչում է՝ ընդհատելով տղայի՝ Արաքսի մասին պատմող գողտրիկ պատմությունը, որի մեջ, սակայն, Արաքսը մենակ գետ չէ:

## Ի՞ՆՉ Է ՍՈՎՈՐԵՑՆՈՒՄ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆԸ

Այս հարցը տալիս է իններորդ դասարանցի տղան, ու ես դժվարանում եմ միանգամից սեղմ պատասխանել:

Սկսում եմ հեռվից՝ «Ե՞րբ ես դու ուրախանում» հարցը ուղղելով դասարանին:

Լսում եմ տարբեր պատասխաններ.

— Երբ «5» եմ ստանում:

— Երբ գիտելիքներիս ավելացնում եմ նորը:

— Երբ ուսուցիչները չեն նախատում:

— Երբ մեքենա եմ վարում:

— Երբ հայրս վերադառնում է խոպանից:

— Երբ ծնողներիս հետ երեկոյան զրույցի ենք նըստում ընթրիքի սեղանի շուրջը:

Ես սղագրում եմ աշակերտների պատասխանները ու հետո գրատախտակին գրում.

**Տուր ինձի, Տեր,**
**ուրախությունն**
**անանձնական.**
**Ծաղիկներու պես զայն**
**ժողվեմ ճամփու վրա՝**
**Նայվածքներուն մեջ**
**ամենուն և ամեն օր:**

Աշակերտները առաջին հայացքից դժվարանում են հասկանալ միտքը:

— Ձեր պատասխանները ինչքան էլ տարբեր, այդուհանդերձ, ընդհանուր բան ունեն: Ասացեք, թե Մեծարենցի ուրախությունից ինչով են տարբեր: Ասացեք՝ ինչո՞վ:

Աշակերտները փորձում են, ու վերջում Բենիկը ամփոփում է.

— Մենք ինչ որ ուզում ենք, մեզ համար ենք ուզում, իսկ Մեծարենցը՝ ուրիշների համար:

Կռահումը ճիշտ է՝ անձնական ուրախություն, սեփական ուրախություն և ուրախություն՝ ուրիշների ուրախությամբ, անանձնական ուրախություն: Պատահում է, որ մենք նույնիսկ տըխրում ենք ուրիշների ուրախությամբ, դա գարշելի բան է, Մեծարենցի ուզածի ուղիղ հակառակը:

Ուրախություն անանձնական... Եթե աշխարհի բոլոր մարդիկ ուզեին նույն բանը՝ անանձնական ուրախություն...

— Ահա, թե ինչ է սովորեցնում բանաստեղծությունը:

## «ԲԻՆԳՅՈԼ»

Իններորդ դասարանում, Ավ. Իսահակյանի ստեղծագործությունն ամփոփելիս, առաջարկում եմ, որ աշակերտներից յուրաքանչյուրը իրեն ամենից շատ դուր եկած բանաստեղծությունը արտասանի և խոսի նրա շուրջը:

— Ձեր ամենասիրած բանաստեղծությունը Իսահակյանից ո՞րն է,— հարցնում է Բենիկը:

— Իմ ամենասիրած բանաստեղծությունը...,— ինքնաբերաբար ասում եմ,— Բինգյոլի մասին գրված երկու բանաստեղծություններն են: Մեկը՝

**Ծնկչնկալով հովն է փչում**
**Զով Բինգյոլի լանջերից,**
**Գոչգոչալով ուղտն է**
**վազում**
**Խոր Բինգյոլի ձորերից...**

Մյուսը.

**Քույրիկ, ասա՝ ո՞րն է**
**ճամփեն Բինգյոլի...**

Աշակերտը լսում է, լռում: Փոքր անց տղան կրկին ձեռք է բարձրացնում.

— Իսկ ինչո՞ւ Իսահակյանի ստեղծագործությունն անցնելիս խոսք չեղավ Ձեր սիրած բանաստեղծությունների մասին:

— «Բինգյոլը» ծրագրից դուրս է,— պատասխանում եմ աշակերտի հարցին,— բայց դուք չպետք է սահմանափակվեք ծրագրում եղածով: Ծրագրի մեջ մտած են առանձին նմուշներ թեմատիկ նկատառումներով, որոնք կաթիլներ են քաղցրահամ աղբյուրների ակունքներից առնված: Այդ աղբյուրների ջրից կատարյալ համ առնելու համար պետք է մոտենաք ակունքին, չոքեք, շրթունքներդ մոտեցնեք, խմեք ու խմեք և չհագենաք... Ասում և ապա բարձրաձայն եղանակում եմ՝

**Քույրիկ, ասա՝ ո՞րն է**
**ճամփեն Բինգյոլի...**

Աշակերտները ուշադիր լսում են:

Չգիտեմ՝ նրանցից մեկն ու մեկը զգո՞ւմ է, հասկանո՞ւմ է, թե ուր է տանում իմ շուրթերից հնչող երգի տողը...



Մկրտիչ
Պեշիկթաշլյան
1828—1868

## Գարուն

Ոհ, ինչ անուշ և ինչպես զով
Առավոտուց փըչես, հովիկ,
Ծաղկանց վըրա գուրգուրալով
Եվ մազերուն կուսին փափկիկ,
Բայց չես հովիկ իմ Հայրենյաց,
Գընա, անցիր սըրտես ի բաց:

Ոհ, ինչ աղու և սրտագին
Ծառոց մեջեն երգես, թռչնիկ.
Սիրո ժամերն ի յանտառին
Ըզմայլեցան ի քո ձայնիկ.
Բայց չես թռչնիկ իմ Հայրենյաց,
Գընա, երգե սըրտես ի բաց:

Ոհ, ինչ մրմունջ հանես, վըտակ
Ականակիտ ու հանդարտիկ,
Քու հայելվույդ մեջ անապակ
Նային զիրենք վարդն ու աղջիկ.
Բայց չես վըտակ իմ Հայրենյաց,
Գընա, հոսե սըրտես ի բաց:

Թեպետ թռչնիկն ու հովն հայոց
Ավերակաց շրջին վերա,
Թեպետ պղտոր վըտակն Հայոց
Նոճիներու մեջ կը սողա,
Նոքա հառաչք են Հայրենյաց,
Նոքա չերթան սըրտես ի բաց:

---

Պեշիկթաշլյանի այս բանաստեղծության խոսքերով «Գարուն» վերտառությամբ երգ է տպագրվել «Քնար հայկական» ընկերության Բ շրջանի «Հանդէս վեցամսեա»-ում («Հեղինակք Տիգրան Չուխաճեան, Գաբրիէլ Երանեան»): Կա նաև այդ մեղեդու Կոմիտասի խմբերգային մշակումը:

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



# Խաղաղության աղավնին

Կանաչ սարերով,
Ծաղիկների միջով
Իջնում ու իջնում էր
Մի սիրուն աղջիկ՝
Աղավնին գրկում,
Ճերմակ աղավնին՝
Խաղաղությունը:

Իջնում ու երգում էր
Խաղաղություն,
Իջնում ու կանչում էր՝
Խաղաղություն...
Կանաչ սարերով,
Ծաղիկների միջով
Աղջիկն էր իջնում,
Իջնում էր, ինչպես
Խաղաղությունը...

ԿԱՐԻՆԵ ԴԱՎԹՅԱՆ
Էջմիածնի № 1 միջն. դպրոց, 6-րդ դասարան



# Ձյունն էր հալվում

Ձյունն էր հալվում,
Ձյունը վերջին,
Գլգլում էր ու երգում էր
Ուրախ առուն սարի լանջին...

Էն ձյան տակից,
Հողի միջից,
Ձնծաղիկի անուշ հոտից
Մրջյունն ելավ մրջնանոցից:

Ելավ, կանգնեց,
Շուրջը նայեց,
Ձնծաղիկի թերթերի մեջ
Պառկեց, քնեց:

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Վրաց. ՍՍՀ, Բոգդանովկայի շրջան, գյուղ Հեշտիա, 8-րդ դասարան

• ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

ՆԱԻՐԱ ՄԱԾԿԱԼՅԱՆ, 13 տ.
Վրաց. ՍՍՀ, Մառնեուլիի շրջ.,
ավան Շահումյան

ՀՈՎՍԵՓ ԽԱԼԱԹՅԱՆ, 18 տ.
Երևան
(ինքնանկարի մրցույթ)



ԱՐԵՎԻԿ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ, 14 տ.
Մարտունու շրջ., գ. Մադինա

ՎԵՆԵՐԱ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ, 14 տ.
Մարտունու շրջան, գ. Մադինա
«ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ»

ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ

# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...



## Հաշվեհարդար

Գարնանը լուր եկավ, թե Դոնի Նախիջևանի և Բեսարաբիայի թեմի առաջնորդ է նշանակվել արքեպիսկոպոս Մատթեոս Վեհապետյանը: Նրան դիմավորելու հանդիսավոր արարողության ժամանակ ողջույնի ուղերձ գրելն ու ընթերցելը հանձնարարեցին Միքայելին: Երբ պատանին մի քանի օր անց հանդիսավոր պայմաններում ընթերցում էր հակիրճ, գրաբար, այսինքն՝ գրական հայերենով գրված խելացի ուղերձը, նրա մտքով էլ չէր անցնում, թե շուտով իր կյանքում տեղի է ունենալու կտրուկ մի շրջադարձ:

Միքայելի քույրը՝ Գայանեն, պատմում է. «Հայրիկին հրավիրեցին առաջնորդարան: Սրբազանը նրան հարցուփորձ է արել մեր նյութական ապահովության և առհասարակ ընտանեկան որպիսության մասին: Հետո, արդեն զրույցի վերջում, հայրիկի համաձայնությունն է առել եղբորս՝ տիրացու Միքայելին, առաջնորդարանի քարտուղարի պաշտոնին վերցնելու մասին»:

... Գրագիր-քարտուղարի պարտականությունները Միքայելին օգնեցին ժողովրդի հետ շփվելու, ծանոթանալու նրա կյանքին, տագնապներին ու ցավերին: Կարճ ժամանակ անց նրա համբավը տարածվեց Ղրիմի, Բեսարաբիայի բոլոր հայաբնակ վայրերում, իսկ Հայկական շրջանում նա արդեն հեղինակություն էր:

Առաջնորդարանում պաշտոնավարելու առաջին իսկ ամիսներին նա ավելի մոտիկից ծանոթացավ և ուսումնասիրեց Դոնի Նախիջևանի շրջակա գյուղերին հատկացված հասարակական այն հողատարածությունների հարցին, որոնք հարմար մի առիթով զավթել էին քաղաքի մի քանի մեծահարուստները:

Միքայելին հայտնի էր, որ գյուղացիները բողոքել ու ետ էին պահանջել զավթած հողերը: Բայց ապարդյուն: Խալիբյանի թելադրանքով դատարանը քննել էր այդ բողոքը և բանտարկությամբ պատժել... բողոքողներին: Իսկ մի քանիսին էլ, որոնք եղել էին կազմակերպիչները, քշել էին Սիբիր: Ձնա-

յած այս անիրավ ու դաժան պատիժներին, կատարված անարդարության դեմ հուզումները չէին դադարել: Խալիբյանը խնդրել էր ռուսական պատժող խմբեր ուղարկել Հայկական շրջանի գյուղերը՝ բողոքավորներին զսպելու համար: Թեև արդեն բավականին ժամանակ էր անցել, բայց գյուղացիները դեռ հիշում էին, թե զինվորները ինչպես էին անողոքաբար մտրակածեծ արել իրենց:

Այս ապօրինությունների մասին Չալթր, Թոփտի, Մեծ Սալա և Սուլթան Սալա գյուղերի համայնքների անունից Միքայելը նամակ շարադրեց Ներսես Աշտարակեցուն՝ մանրամասնորեն նկարագրելով անցուդարձը և խնդրելով կաթողիկոսին բարեխոսելու փոխարքա Միխայիլ Վորոնցովին.

... Միքայել Նալբանդյանը ամենուրեք և ամեն քայլափոխի տեսնում էր և զգում ժողովրդի թշվառ ու անիրավված վիճակը: Օգտվելով մարդկանց տգիտությունից ու անտեղյակությունից, մեծահարուստները ոտնահարում էին նրանց իրավունքները: Ո՞ւմ կարող էր օգնության հասնել առաջնորդարանի քարտուղարը, ո՞ր մեկին:

Մոտիկից ճանաչելով այս ցավալի իրականությունը, Միքայելը կարողացավ յուրացնել մի ճշմարտություն, այն է՝ իրականությունից չպետք է վախենալ, չպետք է հուսահատվել: Եվ այս դեպքում կկարողանաս քո ազնիվ ծրագրերն ու ճշմարիտ գաղափարները մարդկանց հասցնելու ուղիներ գտնել...

Մատթեոս Վեհապետյանը առաջնորդարանի քարտուղարին վստահում էր նաև գրաքննիչի պարտականությունները: Մոսկվայում հրատարակվելիք աշխատությունները երբեմն ուղարկում էին Վեհապետյանին՝ գրաքննելու: Եվ Նալբանդյանը հաճույքով ու սիրով էր ընթերցում այդ աշխատությունները, հատկապես, երբ խոսքը վերաբերում էր Մոսկվայի Լազարյան ճեմարանի ուսուցիչ Ստեփանոս Նազարյանի գրքերին: Առաջին անգամ Նալբանդյանը այդ անունը կարդաց մի աշխատության տիտղոսաթերթին, որը «Յաղագս փորձնական յոգեբանության ճառ» խորագիրն ուներ, այսինքն՝ «Աշխատասիրություն փորձնական հոգեբանության մասին», և ընկլուզվում էր մի առաջաբանով, որի առաջին տողերը կարդալով, այլևս անհնար էր կտրվել:

Ամուլ և անոտի շատախոսությամբ չէ, որ պետք է սիրել Հայրենիքը, գրում էր անծանոթ ու հեռավոր համախոհը, այլ եռանդագին ջանասիրությամբ: Այնուհետև նա անընելի անփութություն էր համարում ազգային լեզվի և գրականության մասին չհոգալը, որովհետև «եթե վերանա լեզուն և գիրը, ապա ազգը, որի գոյությունը սերտորեն կապված է դրանց, կգահավիժի դեպի անդունդն ու կկործանվի»: Իսկ ամենից անսպասելին այն էր, որ իր աշխատությունը դասական հայերենով, գրական հինավուրց հայերենով շարադրած այդ զարմանալի մարդը համոզում էր հրաժարվել հիմա արդեն անհասկանալի դարձած այդ լեզվից և լուսավորություն տարածել, գրականություն ստեղծել արդի խոսակցական լեզվով: Երբեմնի գրական հայերենը հայոց պետականության կորուստից հետո անցած հարյուրամյակների ընթացքում արդեն անհասկանալի էր դարձել ժողովրդական զանգվածներին: Եվ որքան էլ ցավալի էր, հիրավի, ուրիշ ճար չկար... Գեղեցիկ ու կատարյալ այդ լեզուն չէր կարող այլևս ազգային հաղորդակցության միջոց լինել, այդ լեզվով անհնար էր լուսավորություն տարածել...

«Քանի դեռ հայերը անկարող են իրենց բուն լեզվով մտածել, խոսել ու գրել, ուրեմն չի կարող լինել նաև ոչ հայկական ուսում և լուսավորություն, ոչ էլ նույնիսկ հայություն»,— շարունակում էր իր Առաջաբանում Նազարյանը:

Միքայելի համար նաև հանկարծ պարզվեց, որ մինչ այդ իր ձեռք բերած գիտելիքները շատ համեստ են: Անհրաժեշտ է ավելի լուրջ և ավելի խոր ուսումնառություն... Բայց Լազարյան ճեմարանի համար նրա տարիքն արդեն անցել էր:

Հապա Մոսկվայի կամ Պետերբուրգի համալսարաննե՞րը...

Այո, թերևս... Բայց դրա համար անհրաժեշտ էր նախապատրաստվել ընդունելության քննություններին: Մի բան, որ անհնարին էր: Որովհետև այս բոլոր հոգսերից, պարտականություններից ու գործերից բացի, նա վերստին պայքարի մեջ էր: Ու ինչպես հետագա դեպքերը ցույց տվին, այս անգամ, հիրավի, սկսվել էր մահու և կենաց պայքար...

Թիֆլիսում Պատկանյանը փորձել էր գիշերօթիկ բանալ՝ ձախողվել էր: Փորձել էր քահանայություն անել, և արգելվել էր: Փորձել էր ուսուցչության անցնել Ներսիսյան դպրոցում, այդ ցանկությունը ևս մնացել էր անկատար:

Վերջապես, նա Թիֆլիսում մի շաբաթաթերթ հրատարակելու իրավունք է ձեռք բե-

րում: Հիմնական ու նաև միակ աշխատակիցը ինքն էր: Շաբաթաթերթը կոչվում էր «Արարատ» և լույս էր տեսնում խոսակցական լեզվով՝ աշխարհաբարով: Պատկանյանը տըպագրում էր փոքրիկ գրույցներ, գիտական հայտնագործությունների մասին հետաքրքիր լուրեր և հատվածներ՝ ազգային պատմությունից, որոնք նպաստելու էին լուսավորության ու կրթության գործին:

Ի դեպ, հենց «Արարատ» շաբաթաթերթում էլ տպագրվեցին Միքայելի առաջին բանաստեղծությունները, որոնք նա ստորագրել էր այսպես. «Միքայել Նալբանդյանց, աշակերտ Տեառն Գաբրիել Պատկանյանի, Դոնի Նախիջևան»:

Գաբրիել Պատկանյանի շաբաթաթերթը շատ կարճ կյանք ունեցավ: Եվ դրա պատճառը Պատկանյանի անակնկալ մեկնումն էր Թիֆլիսից:

Ավելի ճիշտ՝ վերադարձը Դոնի Նախիջևան:

Միքայելը հետևողականորեն աշխատում էր աքսորից ետ բերել իր ուսուցչին: Եվ այդ նըպատակով կիրառում էր հենց իր՝ ուսուցչի փորձած միջոցը. հասարակական գումարների մասին հաշվետվություն պահանջելը, որը անմիջապես հունից հանում էր քաղաքի հայրերին:

Մատթեոս Վեհապետյանի մոտ ծառայության անցնելուց կարճ ժամանակ անց Միքայելը թեմի առաջնորդի ուշադրությունը դարձյալ հրավիրեց այդ գումարների վրա, որոնք այժմ տնօրինության էին հանձնված Հարություն Խալիբյանին:

Բայց ինչպես ժամանակին Մըկըր աղա Պոպովը, այնպես էլ հիմա Խալիբյանը կըտրականապես հրաժարվեց (հաշվետվություն ներկայացնել: Առաջնորդարանը դիմեց կառավարության օգնությանը: Քիչ ժամանակ անց պատասխան եկավ, որ թեմի առաջնորդը իրավունք ունի ոչ միայն Հարություն Խալիբյանին չհանձնել 1848 թվականից հետո հավաքված եկամուտը, այլև նրանից ետ պահանջել նախկին գումարները:

Հարություն Խալիբյանը զգաց, որ գործը բարդանում է: Նրա երկյուղը Մատթեոս Վեհապետյանից չէր, ոչ էլ քարտուղար Նալբանդյանից, որը դարձել էր առաջնորդի վըստահելի խորհրդատուն և, ինչպես ենթադըրում էին, Վեհապետյանին վճռական քայլերի դրդողը: Նա երկյուղ էր կրում այն հեռանկարից, որ տարիներ առաջ պայթել էր Մըկըր աղա Պոպովի գլխին: Հարություն Խալիբյանը, իհարկե, չէր մոռացել, թե եկեղեցական գումարների հարցը փորփրելուց շահողը ոչ թե խեղճ ու կրակ Գաբրիել Պատկանյանը եղավ, այլ ինքը՝ հզոր Խալիբը, որ Մըկըր աղա Պոպովի ողնաշարը փշրելով, փաստորեն յուրացրեց նրա կալվածքները:

Խալիբյանի վախը բավականին հիմնավոր էր. քաղաքում արդեն ոտքի էր կանգնել երիտասարդ վաճառականների մի նոր սերունդ, որը պիտորժակ ուներ, եթե հաջողվեր, նվաճել ոչ միայն Խալիբյանի ու նրա համախոհների հարստությունը, այլև ձեռք բերել քաղաքի ու ընդհանրապես Հայկական շրջանի ընդհանրապես իշխանությունը:

Վաճառականների այդ երիտասարդ խումբը, ճիշտ գնահատելով հասունացած իրադրությունը, պատրաստակամորեն ընտրվեց ասպարեզ՝ հրամանատար ընտրելով քառասնամյա վաճառական Կարապետ Հայրապետյանին և գաղափարական առաջնորդ՝ քսանամյա Միքայել Նալբանդյանին:

Կարապետ Հայրապետյանը նախիջևանի վաճառականների երիտասարդ սերնդի առավել հարգված, խելացի և ուժեղ ներկայացուցիչներից էր: Ուստի, Մատթեոս Վեհապետյանը, հասարակական գումարների վիճակը ստուգելու նպատակով, մի հանձնախումբ ըստեղծեց՝ Կարապետ Հայրապետյանի գլխավորությամբ:

«Նույնիսկ հարսանիքներում, խնջույքներում, տոնախմբությունների ժամանակ անպայման ծայր էին առնում զրույցներ հայրապետյանականների ու խալիբյանականների հակամարտության մասին,—գրում է Ականատեսը:— Զրույցները փոխվում էին վիճաբանության… Մեկ էլ տեսար՝ հարսանիքը դառնում էր տուրուդմփոցի ասպարեզ»: Միքայելը ամեն առիթ օգտագործելով, համաքաղաքացիներին հիշեցնում էր բարի համբավ ու հեղինակություն վայելող Գաբրիել Պատկանյանի մասին: Խոսք բացվելիս միշտ ընդգծում էր, որ հասարակական սեփականություն հանդիսացող եկեղեցական գումարների խնդիրը առաջին անգամ բարձրացրել է Պատկանյանը, ու հենց այդ պատճառով էլ նրան աքսորեցին: Համոզում էր, որ արդար կլինի, եթե նախիջևանցիները Թիֆլիսից ետ պահանջեն հմուտ ուսուցչին, իսկ Խալիբյանի յուրացրած գումարներն էլ գանձելով, մի կարգին դպրոց կառուցեն քաղաքում:

Այս հորդորները անհետևանք չանցան: Նախիջևանցիները համախոսական կազմեցին ու ներկայացրին Մագիստրատ:

Քաղաքագլուխը Խալիբյանի բանակից էր,

համախոսականի ընթացքը որոշելու էր, վերջին հաշվով, ինքը՝ Խալիբյանը: Նա որոշեց ընդառաջել ժողովրդի կամքին: Ու հենց այնպես, ձևականորեն, այդ հարցով դիմեց Ներսես Աշտարակեցուն: Չէր կարծում, թե լուծումը կարող է այդքան դյուրին ու արագ լինել: Մի բան, որ նրան բնավ դուր չեկավ:

... Ահա թե ինչու Գաբրիել Պատկանյանը «անակնկալ մեկնեց» Թիֆլիսից՝ ընդհատելով շաբաթաթերթի հրատարակությունը:

Թվում էր, թե հաղթանակը Միքայելի կողմըն է, թվում էր նաև, որ հեռու չէ այն ժամը, երբ ծերացած ու հոգնած Խալիբյանը ըստիպված կլինի զիջել դիրքերը:

Բայց առաջին այս հարվածներին դիմանալով, Խալիբյանն ու նրա համախոհները ուշքի եկան ու որոշեցին անցնել հակահարձակման: Նրանք ճիշտ կռահեցին, որ ամենից առաջ պետք է շարքից հանել Միքայել Նալբանդյանին: Խալիբյանի ձեռքի տակ էին Միքայելի նամակները՝ ուղղված տիրացու Սարգսին: Քահանա ձեռնադրվելուց հետո, որպես նշան երախտագիտության, տիրացու Սարգիսը այդ նամակները դավաճանաբար հանձնել էր կաթողիկոսին: Եվ կաթողիկոսն էլ պահանջել էր, որ Մագիստրատը Միքայելին պատասխանատվության ենթարկի: Բայց գործը գլուխ չէր եկել, որովհետև Մատթեոս Վեհապետյանը ամեն անգամ ձգձգում էր նամակների քննությունը:

Իսկ հիմա Միքայելին ձերբակալելու և կաթողիկոսի դատաստանին ուղարկելու գործով զբաղվելու էր ինքը՝ փոխարքա կոմս Միխայիլ Վորոնցովը:

Օղակը ավելի ու ավելի էր սեղմվում Միքայելի շուրջը: Նրա բախտը, սակայն, այնքանով բանեց, որ երբ փոխարքայի հրամանը կատարելու համար Նախիջևանի Մագիստրատը գրեց Քիշնև, որտեղ այդ ժամանակ գտնվում էր Նալբանդյանը, և ոստիկանությանը խնդրեց ձերբակալել օրինազանցին, նա արդեն ճամփա էր ելել դեպի Նախիջևան:

1853 թվականի հունիսի 5-ին, նա մտավ Դոնի Նախիջևան, երբ արդեն ուշ երեկո էր: Բայց համախոհների մեջ նրա ժամանման լուրը տարածվեց կայծակի արագությամբ:

Մի փոքր անց Գաբրիել Պատկանյանը լուր ուղարկեց, թե շտապ ուզում է տեսնել Միքայելին: Երբ նրանք հանդիպեցին, մի կարճ զրույցից հետո ուսուցիչը լծել տվեց կառքը, Միքայելին դուրս բերեց խոհանոցով ու դեռ երկար ժամանակ թանձր խավարի մեջ կանգնած՝ ականջ դրեց, թե ինչպես է հեռվում, փողոցի լռության մեջ, աստիճանաբար մարում սմբակների ձայնը...Այսպես աճապարելը շատ տեղին էր, որովհետև քիչ հետո հայտնըվեցին ոստիկանները, և Գաբրիել Պատկանյանը ձևացավ բանից անտեղյակ:

Հարություն Խալիբյանը իր ծրագիրը գոնե մասամբ իրականացված համարեց: Միքայելը առայժմ վտանգ չէր ներկայացնում: Մյուս հակառակորդը՝ Մատթեոս Վեհապետյանը, նույնպես շուտով դառնալու էր անվտանգ, որովհետև կաթողիկոսը նրա ինքնուրույնությունը չներելով, վճռել էր տեղափոխել Աստրախանի թեմ:

Մնում էր Գաբրիել Պատկանյանը... Եվ այս դեպքում էլ Հարություն Խալիբյանը վճռեց գործել փորձված ձևով: Կաշառված վկաների ցուցմունքներով Պատկանյանին մեղադրեցին «Խալիբյանի դեմ մահափորձ կազմակերպելու» մեջ: Դատական ատյանը, «ոտքի վրա» քննելով հարցը, բանտարկության դատապարտեց Պատկանյանին: Նրան տեղափոխեցին Ռոստովի բանտ, որտեղ նա մնաց ամբողջ յոթ տարի:

... Եվ Դոնի Նախիջևանում կյանքը դարձյալ մտավ իր ճահճացած հունի մեջ: Ազգային հոգսերը մոռացվեցին: Արդարության համար երբեմնի պայքարը փոխարինվեց քաղքենիացող, կուշտուկուռ ապրող, ճարպակալող ուղեղներին շատ բնորոշ անիմաստ մըրցակցությամբ:

Ոչ... Նրանք չէին հրաժարվել ազգասիրության, ազգի զարգացման և առաջադիմելու մասին ճառեր ասելուց: Նույնիսկ իբրև թե ջանում էին:

«Նախիջևանում սկսեցին շինել այնպիսի տներ, սկսեցին պահել այնպիսի կառքեր ու ձիանք,— գրում է Ականատեսը,— որ վայելուչ էր միայն մայրաքաղաքներին... Եվ հենց այդ նորաձևության մոլուցքը, պճնասիրությունը և ամբարտավանությունը բարոյապես կործանման էին տանում քաղաքը»:

Աշնանը լուրեր հասան Դոնի Նախիջևան, թե Միքայելը մեկնել է Ռոստով, այնտեղից էլ Մոսկվա:

Բայց այն ժամանակ ոչ մեկի մտքով իսկ չանցավ, որ Միքայել Նալբանդյանը, Մոսկվայի ճամփան բռնելով, փաստորեն կանգնել է այն ուղու վրա, որը նրան տանելու էր դեպի ազգային-ազատագրական պայքարի հեռաստանները, դառնալու էր համահայկական հեղափոխության առաջնորդ, համագործակցելով համաեվրոպական և համառուսական հեղափոխական առաջնորդների հետ...



# ՔԱՆԻ ԱՆԳԱՄ ԵՄ ՀՊԱՐՏԱՑԵԼ, ՈՐ ՀԱՅ ԵՄ

ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ
ՀՍՍՀ ժողովրդական արտիստուհի,
միջազգային մրցույթների դափնեկիր

Ես ուզում եմ հիշել հիմա, թե քանի-քանի անգամ եմ հպարտացել, որ հայ եմ, երբ, իբրև Սովետական Հայաստանի պատվիրակ, ականատես եմ եղել, թե ինչպիսի խանդավառությամբ է ընդունվել աշխարհի տարբեր մայրցամաքներում հայկական արվեստը: Բազմաթիվ առիթներ եմ ունեցել ինքս անձամբ ներկայացնելու այն միջազգային մրցույթներում և փառատոներում, նաև համաշխարհային հռչակ վայելող բեմերում, և ամենուր՝ իբրև հայկական ոգու խորհրդանիշ, ինձ հետ է եղել կոմիտասյան հանճարեղ երգը:

1968-ին Լայպցիգի կոնսերվատորիան տոնում էր իր 125-ամյակը: Թանկագին մասունքներից էր ցուցափեղկերից մեկի ետևում գետեղված հայկական գեղջկական երգին նըվիրված Կոմիտասի դասախոսությունները, որ

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

նա կարդացել էր ժամանակին Լայպցիգում։ Խունացած թուղթը պահպանել էր կոմիտասյան ձեռագիրը։ Ալեհեր ժամանակի խորքերից հառնել էր մեր առաջ Կոմիտասի կերպարը, որի արվեստի ամեն մի պատառիկ վկայում է իր ազգի առջև ունեցած նրա բարձր պատասխանատվության մասին։ Կոմիտասը, կոմիտասյանը մեզ՝ այսօրվա հայ երաժիշտների համար պրոֆեսիոնալ խղճի և կատարելության բարձրագույն չափանիշ է։

1979-ին բախտս կարծես հատուկ բերեց։ Փարիզյան Լուվրին էր հանձնվում հայկական խաչքարը, նույն միջոցին մի ուրիշ սրահում հայ միջնադարյան մանրանկարչության ցուցահանդես էր, մեկ ուրիշում՝ հայ հրաշալի նկարիչ Հակոբ Հակոբյանի գործերի անհատական ցուցահանդեսը, ես էլ մասնակցում էի դաշնակահարների միջազգային հանդիպմանը։ Այստեղ յուրովի խաչաձևվեցին մեր արվեստի անցյալն ու ներկան, որոնց մշտական դաշինքը վավերացրել է Հայրենիքը։

Ես թերթում եմ հիմա Դավիթ Անհաղթի, Նարեկացու և Քուչակի երկերը, լսում եմ Շնորհալու երաժշտությունը, կարդում Անիի ճարտարապետության մասին, հիանում խաչքարերով, Զվարթնոցով ու Գեղարդով, հասնում Սևակին ու Խաչատրյանին, նորից վերադառնում ակունքներին և մտածում, որ իրոք, քանի անգամ, քանի ասպարեզում հայ մարդը իրավունք ունի ասելու՝ «առաջինը մենք», «առաջին անգամ, ամենա, ամենա», սակայն մի՞շտ է արդյոք նա հասկանում, թե փաստն այդ որպիսի պատասխանատվություն է դնում իր վրա, մեզ վրա։ Մենք պարտավոր ենք նույն բարձրության և մակարդակի վրա ներկայանալ մեր հետնորդներին։ Այսօր մեր հիասքանչ հայրենիքը արտակարգ վերելք է ապրում, հսկայական ուժի ու նշանակության գործեր են կատարվում, որոնցով կարող ենք հպարտանալ բոլորս։ Սակայն հպարտանալը քիչ է, սիրելի բարեկամ, ուրիշները հայ ժողովրդի մասին պատկերացում են կազմում ոչ միայն Սարյանով ու Խաչատրյանով, այլ ամեն մի հայով, ամեն հայ մարդով, նրա վարքով ու բարքով...

Լոնդոնի կիրակնօրյա հայկական դպրոցում էի։ Դրսում ցուրտ ձմեռ էր։ Մանուկները երկինք, արև, ծառեր էին նկարում։ Հայերեն էին նկարում։ Այո, հայերեն են նկարում աշխարհի բոլոր հայ մանուկները։ Ուրեմն՝ գույնն էլ ունի ազգի զգացողություն։ Հապա լեզո՞ւն։

«Դուք խոսում եք հայերեն,— ծաղկեփնջով բեմին մոտենալով շշնջաց ծեր լեհուհին,— հայ եք»։ Հապա մտածեք, սիրելի բարեկամ, թե ինչու իմանալով հայ լինելդ, միշտ հարցնում են՝ խոսո՞ւմ ես, արդյոք, հայերեն։ Հարցնում են, որովհետև, գիտեն, առանց լեզվի չկա ազգի զգացողություն։ Իսկ գիտե՞ս, թե ինչ է լեզվի «պետական» լինելու հասկացողությունը, մտածե՞լ ես դրա մասին։

Մտքով, ահա, տեղափոխվում եմ սփյուռքի գաղթօջախները, ուր դաժան պայքար է գընում ձուլման դեմ՝ հանուն հայապահպանման, և նրանց պայքարի առաջին զենքը լեզուն է։ Դառն ճակատագրի տեր այդ մարդկանց ուժ տվողը, թևավորողը հայրենասիրությունն է, Հայրենիքը։ Երբ ես բացակայում եմ հայոց երկրից, նույնիսկ կարճ ժամանակով, կարոտում եմ, կարոտում եմ մեր սարերին, մեր հողին ու նրա բույրին, երևանյան տուֆին ու շատրվաններին, կարոտում եմ ծնողներիս, ընկերուհիներիս, կարոտում եմ այն ամենին, առանց որոնց չեմ պատկերացնում կյանքս։ Մեր տնից ոչ հեռու, Ծիծեռնակաբերդի բլրի վրա, բարձրացել է մի հրաշք համալիր, կողքին՝ եղեռնի զոհերի հիշատակին կանգնեցված հուշարձանը։

Հիշատա՞կ, հիշողությո՞ւն, սե՞ր... Նա, ով լավ գիտե հայոց պատմությունը, կկարողանա գնահատել վերածնված Հայաստանը, որը, եղբայրական հանրապետությունների հետ կողք-կողքի կանգնած, տնօրինում է իր գալիքը տիրոջ լիիրավ իրավունքով։

Սիրել Հայրենիքը նշանակում է նաև ճանաչել այն։ Ես մտածում եմ հիմա, թե ես որչափ քիչ գի՛տեմ մեր հայրենիքի մասին։ Իսկ դո՞ւ։ Շա՞տ բան գիտես քո հայրենիքի և ժողովրդի մասին, երբևէ մտովի անցե՞լ ես նրա անցած ճանապարհով, վերապրե՞լ ես մտովի նրա ճակատագիրը, թևածե՞լ նրա երազներով։ Ճանաչո՞ւմ ես, արդյոք, նրա մըշակույթը, որ անառիկ պատնեշ է եղել սրի ու հրի դեմ, նաև զենք՝ գոյատևման, գիտությունը, որից կյանք են առել մաշտոցյան տառերը։ Իսկ լա՞վ ես ճանաչում, արդյոք, հայի բնավորությունը, նրա բարոյական սկզբունքներն ու նրա սրբությունները։

Սերը հայրենիքի հանդեպ, իսկական սերը անձնազոհ է, ոչ ճչացող և ոչ պոռոտախոս։

Արա այսօր ուժերիդ ներածը, պահպանիր եղածը, եղածին դու էլ քո հերթին մի շյուղ ավելացրու, հավատարիմ եղիր հայ մարդուն դարեր ի վեր բնորոշ բարձր հատկանիշներին՝ աշխատասեր եղիր, ազնիվ, պատվախնդիր, արժանի զավակ եղիր հայրենիքիդ, մարդ եղիր պարզապես մեծատառով։ Դրանից է սկսվում հայրենասիրությունը։ Դրանում է իսկական հայրենասիրությունը։

# «...ԻՄԱՆԱԼ ԶԲԱՆՍ ՀԱՆՃԱՐՈՅ»



Հայրենիք ենք կոչում երկիրը, ուր ծնվել և ապրում ենք սերնդեսերունդ, դարեդար: Բայց դա դեռ բոլորը չէ՝ դրան պետք է ավելացնել ձմռան երկար գիշերներին մեր պապերի ու տատերի հեքիաթներն ու զրույցները, տներ շինող մեր հայրերի չարչարանքը, սարերի, աղբյուրների, դաշտերի անունները, որոնք, մեր մանկության ժամանակ մեզ թվում էր, թե միայն պապերը, հայրերը գիտեն և միայն իրենց համար գիտեն: Բայց նրանք այդ ամենը մեզ սովորեցրին հող մշակելիս, հունձ անելիս ու այդպես էլ ընդունել տվին մեզ: Ահա՝ մենք, որպեսզի նրանց նման ամուր ու վստահ ապրենք այդ նույն հողի վրա, մեկիկ-մեկիկ սովորում ենք նրանց ու հողի պատմությունը, ամենակարևորը՝ այն, թե նրանք այդ հողի ու իրենց կյանքի դարավոր պատմության ընթացքում ինչպես են ճանաչել աշխարհը, որովհետև ոչ ոք չի ապրում աշխարհից դուրս:

Այդպես էլ ապրում են ժողովուրդները: Ինչպես գյուղի պատմությունններն են հիմնականում առանձին մարդկանց գործերով ու կարևոր դեպքերով անվան պես ամրանում հողին, այդպես էլ ժողովրդի պատմությունն է դառնում ինքն իրեն ու աշխարհը ճանաչելու աղբյուր:

Ծիրոյենց Հարություն պապը, երբ պատմական Հայաստանից գաղթեց նոր վայրում հաստատվելու, իր հմուտ աչքով դիտեց-ջոկեց սարալանջի մեծ դաշտը, և գյուղը մի հարյուր տարի միայն այդ դաշտի բերքով էր ապրում ու հիմա էլ է ապրում՝ նրա անունը տված դաշտին ու իր հիշողության մեջ նրա համար մեծ սեր ու հարգանք պահած:

Մեսրոպ Մաշտոցը իր ժողովրդի համար այբուբեն ստեղծեց, ու հայերս մինչև հիմա հացից զատ նաև դրանով ենք ապրում: Մովսես Խորենացին գրեց մեր ժողովրդի առաջացման, կազմավորման պատմությունը, և մենք դրանով մեզ ճանաչեցինք:

Եվ այդպես շատ ու շատ ուրիշ մեծեր, որոնք ճանաչեցին ու մեզ պատմեցին մեր կյանքի ու պատմական բախտի մասին և թե՝ մենք ինչպես և ինչքան ենք ճանաչում մեզ ու աշխարհը:

Ինչպես որ մենք՝ յուրաքանչյուրս, առանց մեր հայրենի քաղաքի, գյուղի, սարի, դաշտի պատմությունն իմանալու չենք կարող այնտեղ լիարժեք ու վստահ ապրել, այդպես էլ առանց մեր պատմության ու մշակույթի մեծերին իմանալու չենք կարող համարվել մեր Հայաստան երկրի ծնունդն ու տերը:

Ահա այդ նպատակն էլ հետապնդում է նյութերի այն շարքը, որ այսուհետև կկարդաք մեր ամսագրում «... իմանալ գբանս հանճարոյ» խորագրի տակ:

# «Ձեռնովս կը ցանեմ, բերնովս կը քաղեմ»



Լուսանկար՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Ներդաշնակ ու հանդարտ ծփում է արտը, ալիք-ալիք իր դեղին ցոլքը տալիս բլուրներին, բույրը՝ հարավ քամուն։ Եվ ավելի պայծառ են երևում կանաչ լանջերը, մռայլ քարերը, թափանցիկ գետը, երկնքի խաղաղ կապույտը։ Երբ արտը դեռ արտ չէր, և գետափին,

բլուրների մեջ ընկած դաշտը խոտ էր աճեցնում, միայնակ էին՝ ջրվոր ու հնձվոր չունեին: Հետո սերմնացանը եկավ, հերկեց դաշտը և հողին պահ տվեց ցորենի դեղին հատիկները, երկինքը անձրև ու արեգակ տվեց, սերմնացանը՝ խնամք, և արտը հասուն ու խ... ղող ծփաց: Որովհետև արտը հողից է բարձրանում, հողի ձայնին ունկնդիր է, նա էլ հնձվորին պատմում է հողի պատմությունը, և նա ինքն է նաև հողի ամենաազնիվ զարդը: Այդպես՝ արտը՝ գիր, հնձվորը՝ կարդացող, ամեն օր խնամքով ու համբերատար կարդում, սովորում է հողի, արտի ու իր պատմությունը:

Ինչպես հնձվորն ունի արտ, այդպես էլ յուրաքանչյուր ժողովուրդ ունի իր գիրն ու լեզուն, որով կարդում, սովորում է աշխարհի ու մարդկանց պատմությունը: Եվ մեր արտը մեր հայոց գիրն է, մեր սերմնացանը՝ 406 թվականին մեր լեզվի գիրը ցանած լուսավոր սերմնացան Մեսրոպ Մաշտոցը: Նա ստեղծեց հայոց գիրը մեր սար ու քարի, ձոր ու արտի պատկերով, և որովհետև գրել-կարդալը իրոք արտի նոր տեսակ էր ու հնձելու նոր տեսակ, մեր հին պապերը իրար ստուգում էին, թե արդյո՞ք լավ ու ճիշտ են դա հասկանում:

— Էն ի՞նչն է, ի՞նչը,— ասում էին,— սիպտակ արտ մը ունիմ՝ ձեռնովս կը ցանեմ, բերնովս կը քաղեմ:

— Մեր հայոց գի՛րն է:

Հետո, ինչպես հին, հրաշալի պատմություն, պատմում էին.

— Երկու մարդ կը գծե, երկրորդին ոտքին տակեն եղջերաձև նշան մը կավելցնե, կընե Ա: Հրեշտակ մը կը գծե՝ թևերը ծալլած, ձեռքը ծաղկանց մը կուտա ի կախ, այն է՝ Ի: Օձ մը կը պատրաստե՝ տուտը պարանոցի տակեն մտցունելով՝ դուրս հանելով, այն է՝ Ծ: Թռչնո մը անանկ ձև մը կուտա, որ կը տեսնաս, թե Հ է:

Այսպես բոլոր մեր Այբ Բենն մինչև Քեն:

Իսկ դպրոցներում կյանքին ու գրին հմուտ ուսուցիչները սովորեցնում էին հայոց Այբուբենը, և զրնգում էր մանուկների համերաշխ ձայնը.

Այբ, բեն, գիմ,
Եչ, Հովակիմ,
Դա, եչ, զա,
Լծիր եզան:

Եվ տքնաջան, հրաշալի ծաղկողները՝ մատյան գրող-նկարազարդողները, սքանչելի, հրաշագեղ ձևեր ու գույներ էին տալիս հայոց գրին: Մատենադարանի լայն դռներից ներս՝ գրքերի խաղաղության ու մեծության շնչից արտասովոր բույրով լեցուն դահլիճներում, մենք այսօր լուռ ու հմայված դիտում ենք հայոց գիրը: Գույների, ձևերի բազմազանությունն ու շռայլությունը, ասես հայոց աշխարհի բոլոր գարունները միատեղված լինեն՝ այդպես բուռն ու սքանչելի բացվում է հարուստ: Ովքե՞ր են գրքերն այսպես ակնածալից ու սիրով մեզ նվիրել: Գույների, գրերի հրաշքի վերջում՝ մի աննկատ անկյունում, կարդում ենք՝ Թորոս Ռոսլին, Սարգիս Պիծակ, Մոմիկ ու այլ բազմաթիվ անուններ ու նրանց միակ սեփական խոնարհ խոսքը՝ «Ձեռս գնա դառնա ի հող, գիրս մնա հիշատակող»:

Մաշտոցի աշակերտներից Կորյունը գրեց նրա կենսագրությունը. «Մաշտոց էր անունն այն մարդու, որի համար և մենք հոգ ենք տարել պատմելու: Նա Տարոն գավառից էր, Հացեկաց գյուղից, Վարդան անունով երանելի մարդու որդին: Մանկական հասակում նա կրթվել էր հելլենական դպրությամբ, ապա եկել, հասել էր Մեծ Հայաստանի Արշակունի թագավորների դուռը, կացել էր արքունի դիվանատանը, դառնալով արքայի տված հրամանի ծառայողը»:

Բայց երկրին անհրաժեշտ էր գիր, և արքայի, կաթողիկոս Սահակ Պարթևի ու Մաշտոցի ջանքերով հրավիրվեց երկրի ավագանու խորհուրդ, որից հետո Մաշտոցը մի խումբ պատանիների հետ արքայի հրամանով գնաց ասորաց Ամիդ ու Եդեսիա քաղաքները, որոնք այդ ժամանակ գիտության կենտրոններ էին: Բավական ժամանակ այնտեղ ուսումնասիրելով հարուստ գրականություն, Մաշտոցը «... ծնեց նոր և սքանչելի ծնունդներ-հայերեն լեզվի նշանագրեր»: Աներևակայելի էր արքայի, երկրի ավագանու և ժողովրդի ուրախությունը, երբ ողջ բազմությամբ ու զորքով նրան դիմավորում էին Ռահ (Երասխ) գետի ափին:

Մաշտոցի առաջին աշակերտ Կորյունը հըպարտ է պատմում մեզ այդ օրերի մասին: Է՜, 406 թվականի նրա ուրախությունը, բարձրահասակ, սևամորուս ու արարման ցնծությունն աչքերում Մաշտոցը, հուզված, ժողովըրդին ու ժողովրդի գիր ունենալու մեծ բախտըն օրհնող կաթողիկոսը, վերջապես իրեն հայոց ուժեղ պետության թագավոր զգացող Վռամշապուհ արքան ահա՝ մեր աչքերի առաջ, Կորյունի գրի մեջ ուրախանում են: Եվ ոչ միայն մենք ենք նրանց տեսնում, այլև նրանք էլ անպայման մեզ են տեսնում՝ այդ ուրախությունը նաև մեզ՝ մեր գիրը կարդալիս տեսնելուց է: Այո, 406 թ. այդ ուրախ օրը վերջապես ցրվում է արքայի մռայլությունը,

որովհետև հայոց գիրը միայն նշանագիր չէր։ Հայոց գիրը այն մեծ ուժը եղավ, որով երկիրը դառնում էր հզոր բռունցք թշնամու դեմ, իսկ թշնամիները քիչ չէին, և նրանց դեմ գրի ու լեզվի միասնական ուժով ելանք։ Հայոց գիրը դարձավ զենք, որով հայ ժողովուրդը ուղիղ հազար հինգ հարյուր տարի պաշտպանվեց արհավիրքներից, պայքարեց ու իրեն պահպանեց։

Ահա, հիմա մենք կարողանում ենք գրի, մատյանների, հանճարի ու արտի պատմության մեջ տեսնել նաև մեզ. չէ՞ որ մենք ենք հայոց լեզվի ու գրի այժմյան կրողն ու տերը։

Ահա Մամբրե պապն իր թոռանն ասում է.

— Զգույշ, սուրբ Մաշտոցի գրերն հարկ է, որ գրվեն կարմիրով։ Ասա՝ ինչո՞ւ, քանզի Սուրբ Մաշտոցը գրերն իր սրտից է հանել ի լույս։ Քանզի թրծվել են արդար Արեգակով։ Եվ կարմիր են, քանզի սրբազան կռիվների են մասնակից եղել։ Իմացա՞ր։

Ամեն մեկս, երբ գրաճանաչ ենք դառնում, նույն հուզմունքով ենք վերցնում գրիչը, ինչ հուզմունքով որ հազար վեց հարյուր տարի առաջ Մաշտոցը վերցրեց և վստահ ու մեծ խորհրդով գրեց. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ, իմանալ զբանս հանճարոյ»։ Մենք էլ ենք նույնը գրում՝ ճանաչել իմաստություն և խրատ, իմանալ հանճարի խոսքերը. և որովհետև մեր մեծ Ուսուցիչն ու առաջին հանճարը նա է՝ մենք սկսում ենք նրանից՝ Ա՝ Արարատ, Գ՝ գիր, Մ՝ Մաշտոց...։

Եվ բոլորովին պատահական չէ, երբ Մաշտոցը գրերն ստեղծելուց հետո սովորեցնելու գործին ձեռնամուխ եղավ հատկապես երկրի սահմանագլուխ շրջաններում կամ հայոց գիրը սկզբում սովորեցրեց հայոց բանակին։ Գիրը համախմբեց ժողովրդին ու պետությանը. այստեղ հայոց երկիրն է, որովհետև խոսում և գրում են հայերեն։ Եվ գրով տասնապատիկ ուժեղացան երկրի սահմանները ու բանակը, բոլորը կարողանում էին սովորել իրենց լեզուն հայերեն գրերով։ Իսկ մինչ այդ Հայաստան երկրի գրագրությունը, գրքերը ասորերեն էին կամ հունարեն՝ խոսում էին հայերեն, գրում՝ այլ լեզվով։ Եվ եթե գտնվում էին այլ լեզվի իշխանության տակ, ուրեմն՝ գտնվում էին նաև տվյալ երկրի իշխանության տակ, ուրեմն՝ բաժանված էին, ոչ միաբան, որովհետև կեսը մի լեզուն էր ընդունում, կեսը՝ մյուս։

Մեսրոպ Մաշտոցը ծնվել է 361 կամ 362 թվականին, 406 թվականին նա 43—44 տարեկան եռանդուն, ոգևորված ու նախանձախնդիր ուսուցանող էր։ Նրան էին նման նաև առաջին աշակերտները՝ իր «Հայոց պատմություն» մեծ գրքով «պատմահայր» պատվավոր անունը վաստակած Մովսես Խորենացին և քաղցրահամ ու ախորժելի լեզվով «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» հերոսական գիրքը գրած ոսկեղենիկ Եղիշեն։ Մեծ իմաստուն և խոհեմ փիլիսոփա Եզնիկ Կողբացին, որ իր «Եղծ աղանդոց» (Աղանդների հերքումը) հրաշալի գրքով ոգեղեն առաջին ճակատամարտը վարեց հատկապես պարսիկների դեմ ու հաղթեց։ Կորյուն խոնարհ պատմիչը, որ իր «Վարք Մաշտոցի» անմահական գրքով պատմեց իրենց ուսուցչի կյանքը, 451 թվականին Ավարայրի ճակատամարտում հայ ժողովրդի ազատության համար նահատակված Վարդան Մամիկոնյան քաջ զորավարն ու անձնազոհ հայրենասեր Հովսեփ կաթողիկոսը և շատ ու շատ ուրիշներ։

Ինչպես խավար սենյակի դուռը բացես գարնան արեգակի առաջ, այդպես 406 թվականին Մաշտոցը իմացության լույսի դուռը բացեց իր ժողովրդի առաջ։ Եվ լույսը խուժեց ու խուժեց, չթողեց մութ անկյուն։ Թարգմանվեցին օտար մեծ հեղինակների գիտական, պատմագրական գրքերը, Աստվածաշունչը, հին գիտնականների գործերը և շատ այլ գրքեր։ Թարգմանական այդ մեծ շարժումը ղեկավարում էր ինքը՝ Մաշտոցը։ Հորինվեցին սեփական գիտական գրքեր ու գեղարվեստական գրականություն, և հայ առաջին բանաստեղծներից էր ինքը՝ Մաշտոցը։ Իսկ թարգմանական գրականության արժեքն ուղղակի անգնահատելի է։ Այսպես, օրինակ՝ մի գիրք պատմում է հույների մասին, հեղինակը հույն է, բայց այդ գիրքը հունարեն չկա, պահպանվել է միայն դրա հայերեն թարգմանությունը, որն այսօր հունարեն բնագրի արժեքն ունի։ Կան այլ թարգմանական գործեր, որոնք բնագրից էլ կատարյալ են, և ավելի շատ տեղեկություններ են պարունակում, քան բնագրերը, որովհետև հայ թարգմանիչը մի երկրի մասին պատմող գրքին ավելացրել է նաև հարևան ու իր երկրների պատմությունից տեղեկություններ և ավելի հարուստ ներկայացրել ժամանակը։

Դա ամենալուսավոր դարն էր հայոց պատմության մեջ, որովհետև Մաշտոցից գիր, լեզու և մշակույթ սովորողները միայն գրագետ դառնալու համար չէին սովորում՝ նրանք այդ իմացությամբ երկիր էին պահում։ Վանքերի մռայլ խցերում գիշեր ու զօր նրանք կարդում էին, թարգմանում ու գրում, և նրանց ոգևորողը, ուժ տվողը իրենց ուսուցիչն էր։ Բայց ուսու-

ցիչը դեռ միայն Հայաստանի պարսկական մասում էր գործում, որովհետև 387 թվականից Հայաստանը երկու մասի էր բաժանված Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև։ Եվ ահա՝ Մաշտոցը, երկար օրեր համբերությամբ անցնելով հեռու ճանապարհը մինչև Բյուզանդիայի մայրաքաղաք Կոստանդինապոլիս, դեռ ճանապարհի փոշին չթոթափած՝ ընդունելության է արժանանանում կայսեր կողմից։ Կայսրը և կաթողիկոսը նրան ընդունում են մեծ ուրախությամբ ու ընծաներով և բարեհաճորեն լսում նրա խնդիրը՝ Հայաստանի բյուզանդական մասում ևս հայոց լեզվով դպրոցներ բացելու մասին։

Կայսրը նրա խնդիրը բավարարում է, իսկ այդ նշանակում էր միավորել հայոց անջատ երկիրը։

Թվում էր, թե վերջապես նա կարող էր փոքր-ինչ հանգստանալ։ Դե, արդեն հմուտ աշակերտներ ուներ, որոնք տքնաջան աշխատում էին, դպրոցներ բացում, որտեղ հավաքած մանուկները սովորում էին հայոց լեզուն, թարգմանիչները թարգմանում էին իմաստուն և արժանի գրքեր, և առհասարակ երկիրը լուսավորվում էր։ Բայց «այն ժամանակ եկավ, հանդիպեց նրան մի երեց մարդ, ազգով աղվան (այդ ժողովուրդն ապրել է ներկայիս Ադրբեջանի տարածքում), անունը Բենիամին։ Եվ Մաշտոցը հարցրեց ու քննեց աղվաներեն լեզվի բարբարոս խոսքերը, ապա վերուստ պարգևված իր սովորական կորովամտությամբ նշանագրեր հորինեց և հաջողությամբ կշռադատեց, կարգավորեց, հաստատեց»։ Աղվանքում աղվաներեն լեզվի գիրը տարածելուց հետո, ըստ Կորյունի, Մաշտոցն անցնում է Վրաստան, որտեղ ևս, ինչպես Հայաստանում ու Աղվանքում, հորինում է վրաց լեզվի գրերը, դպրոցներ բացում, սովորեցնում և ապա վերադառնում Հայաստան։

Մաշտոցի գործը հայ մտքի բոլոր մեծերի համար եղավ սկիզբ, գերեզմանը՝ ուխտատեղի։

Այսօր էլ ամեն տարի սեպտեմբերին Օշական գյուղում, ուր համեստ մատուռի մեջ ամփոփված է Մաշտոցի շիրիմը, կատարվում է գրի ու գրականության տոն՝ Թարգմանչաց տոն։

Եվ մենք էլ, երբ դպրոցում սկսում ենք սովորել հայոց այբուբենն ու հայոց լեզուն, նրանից ենք սովորում՝ նա ներկա է, նա մեր ամբողջ կյանքի ընթացքում ուղեկցում է, խոսելիս լինենք, թե կարդալիս՝ մենք բերանով ու մտքով քաղում ենք նրա աջով շռայլորեն ցանածը։

**ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ**



# Սևակավանը

Նախ ժեռուտ բլուրները կանաչեցրին, ապա խաղողի ու ծիրանի այգիներ բացվեցին։ Իսկ բլուրներից վեր՝ Ուրցի լեռներին շատ մոտ, կառուցվեցին փոքրիկ տներ, երևաց կտուրներից ելնող ծուխը, մեքենաները՝ հորդալից վերուվարելով, ճանապարհ հարթեցին։ Եկան բեռնված ու դատարկվելով՝ ետ դարձան, որ վերստին բեռնված վերադառնան։ Դարձան ետ ու բերեցին տաշած քար, խմելու, շաղախ անելու ջուր, ցեմենտ, հաց, կահկարասի, բերեցին զանազան ձայներ՝ ծիծաղի ու քրտինքի ծաղկեցնող բույրերով առատ։

Հետո փորում, փորում ու քանդում էին քարը, փորում ու խմելու բաժին ջրով փափկեցնում էին քարից էլ պինդ ավազը, որ հող դառնանա։

— Ի՞նչ եք փորում,— հարցրին Զանախչի—Երևան խճուղուց հետաքրքրության համար աջ թեքվածները։

— Տան հիմք։

— Տան հի՞մք։ Այս ժեռուտի մեջ ի՞նչ տուն։

— Սովորական տուն,— եղավ պատաս-



Լուսանկարները՝ ԱԾՈՏ ԱԲՐԱՀԱՄՅԱՆԻ

խանը։

Եվ փորեցին։

Ծարքով, հերթով բարձրացան ժամանակավոր բնակարանների պատերը, ամփոփվեցին կտուրները, ծածկերը, տանիքները շատացան։

Սկիզբն այսպես դժվար եղավ։ Կամաց-կամաց։ Քարի դեմ կռվելով։ Ավազի դեմ կռվելով։ Եվ ծարավի դեմ կռվելով եղավ։ Հիմա ջուրը խողովակաշարով Սովետաշենի (Զանախչիի) կողմերից հասել ու խշշում է ծորակներից։

Բանաստեղծի ավանում ապրել ցանկացողները շատ էին, ասես բանաստեղծի ձայնը՞ն էր կանչում և ուժ տալիս նրանց։ Այս հրաշալի կանչի, այս հրաշալի ուժի կախարդանքով պայթեց առաջին հարսանիքի թուղթ նվագը։ Հիմա Սերգեյ և Իվետա Աղաբեկյանները ունեն երկու որդի՝ Արմենը և Կարենը։

Ծուտով № 8 փողոցում բնակարանամուտ կլինի։ 25 տուն։ Այսինքն՝ 50 ընտանիք։ Այսպես ու ավելի մեծ՝ 18 հիմնական փողոցներ։ 18 երանգ։ Բազմերանգ ավան, որի յուրաքանչյուր տունը իր ինքնատիպ կառուցվածքն ունի, ինչպես բանաստեղծի յուրաքանչյուր ստեղծագործությունն է ինքնատիպ ու բարձրարվեստ։

Ավանը հիմնվեց 1979 թվականին, այգեպտղաբուծական № 4 սովխոզ անվան տակ, և բանաստեղծի անվամբ կնքվեց 1984 թվականին։

Ավանը կունենա 580 տնտեսություն՝ շուրջ 2360 բնակչությամբ։ Մսուր-մանկապարտ ե զ ի 2 շենքերից մեկն արդեն շահագործվում է։ Կկառուցվի կուլտուրայի տուն՝ հայկական հին ու նոր ճարտարապետության սկզբունքներով։ Կլինի դպրոց, իհարկե, գեղեցիկ, լուսառատ, 624 աշակերտ կունենա։

Ահա, նայիր այս լուսանկարները, և քեզ համար պարզ կդառնա, թե ինչպես է կառուցվում Սևակավանը։ Հիմա տեղին է արտահայտվել, որ այլ կերպ չէր էլ կարող լինել։ Ուրեմն՝ փառք ստեղծագործ մեր ժողովրդին։

ՎԱՀԱՆ ԹԱՄԱՐՅԱՆ



Սփյուռքահայ ճանաչված բանաստեղծուհի **ԴԱՅԱՆԱ ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ,** որը գրում է անգլերեն, կատարում է նաև թարգմանություններ հայերենից անգլերեն՝ հայ գրականության լավագույն նմուշները ներկայացնում է անգլախոս ընթերցողներին: Բանաստեղծուհին մեր ամսագրին է ուղարկել իր բանաստեղծություններից մեկը, որն ինքն էլ ձևավորել է: Ահա այդ բանաստեղծությունն ու նրա տողացի թարգմանությունը:

# Դու նաև իմ լեռն ես

# YOU ARE MY MOUNTAIN TOO

I
climbed
the last flight
of hotel stairs
every morning, heart
pounding, to the terrace
where the sun should rise to
shine against your crest. Every
morning the horizon was swathed only
in blue mist, and mist again. Every Armenian
knows the legend, that, you hide from the eyes of
unworthy men. Many a would- be conqueror in the past, many
a tourist has turned home without you blessing his sight. On my fifth
morning, a hotel matron, towels on her arm, stopped me on the stairs, laughing,
to say, "If you are looking for Ararat, there are two places to search, your heart,
and the other side of the hotel!" Rushing, I saw you then, transfigured in
blue light, waiting to strike the blow that crosses borders and time.

**Ես ամեն առավոտ բարձրանում էի հյուրանոցի սանդուղքների ամենավերին հարթակը, որ տեսնեմ՝ ինչպես է արևը բարձրանում ու շողում քո կատարին:**

**Ամեն հայ գիտի այն առասպելը, ըստ որի դու թաքնվում ես անարժան մարդկանց աչքից, պարուրվում մառախուղով: Շատ գրոսաշրջիկներ են տուն դառնում քո օրհնանքը չստացած: Իմ այստեղ գտնվելու հինգերորդ օրվա առավոտյան հյուրանոցի սպասուհին, սրբիչները թևին գցած, կանգնեց իմ դիմաց՝ սանդուղքի գլխին, և ծիծաղելով ասաց. «Եթե դու փնտրում ես Արարատը, փնտրիր երկու տեղ՝ քո սրտում և ապա հյուրանոցի մյուս կողմը»: Խենթի պես սլացա այն կողմ և տեսա քեզ՝ պայծառափայլ, արեգակի ճաճանչների մեջ՝ սպասումով ուժգին հարվածի մի, որ խաչաձևելու էր սահմաններ ու ժամանակ:**



**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՈՒԹԵՐՈՐԴ

# Երկիր Նաիրի

Հայաստանի պատմության մասին շատ տեղեկություններ են տալիս Ասորեստանի սեպագիր արձանագրությունները: Մ. թ. ա. 2-րդ հազարամյակի սկզբներին Միջագետքում՝ Տիգրիս և Եփրատ գետերի միջև ընկած այդ տարածքում, ստեղծվեց Ասորեստանի թագավորությունը: Մայրաքաղաքն էր Աշուրը, Տիգրիս գետի ափին: Աշուր ասորեստանցիների գլխավոր աստծու անունն էր. և նրանով էր կոչվում մայրաքաղաքը: Աշուր անունը հանդիպում է նաև Ասորեստանի մի քանի թագավորների անուններում՝ Աշուր-Ռաբի, Աշուր-Նացիր-ապալ, Աշուր-Բանիպալ և այլն: Ասորեստան հենց նշանակում է Աշուրի երկիր, Աշուրի ժողովուրդ: Ասորեստանի մյուս աստվածներից էին՝ Իշտարը (աստղերի ու երկնքի աստվածուհի), Ադադը (անձրևի և ամպրոպի աստված) և այլն:

Միջագետքում այդ ժամանակ կային նաև այլ պետություններ, որոնցից հզոր էին մեզ արդեն ծանոթ Միտանին և Բաբելոնը: Այդ պետություններն իրար հետ մեծ մասամբ անհաշտ էին, հաճախ էին իրար դեմ պատերազմում: Մերթ մեկն էր հաղթում, մերթ մյուսը: Մ. թ. ա. 18-րդ դարում հաղթող եղավ Բաբելոնը, և Ասորեստանը ենթարկվեց նրան: Իսկ հետո հզորացավ Միտանին և Ասորեստանին իրեն ենթարկեց:

Հիշենք, որ խեթերը մի քանի ուժեղ հարված հասցրին Միտանի թագավորությանը, և սա շուտով սկսեց քայքայվել: Ասորեստանն օգտվեց դրանից և դարձավ անկախ՝ իրեն միացնելով Միտանիի մի մասը: Այդ ժամանակ՝ մ. թ. ա. 14-րդ դարի վերջին, Աշուրում ստեղծվեց Ասորեստանի մի նոր թագավորություն: Եվ Ասորեստանը գնալով ավելի հզորացավ: Ասորեստանի թագավորներ Ադադներարի I-ը, ապա Սալմանասար I-ը արշավում էին դեպի հարևան երկրները, գրավում դրանք ու միացնում Ասորեստանին: Այդպես գրավեցին Բաբելոնը, Սիրիան (Ասորիքը): Նրանք մի շարք անգամ արշավեցին նաև դեպի հյուսիս, այսինքն՝ դեպի Հայկական լեռնաշխարհ:

Ասորեստանի թագավորները բազմաթիվ արձանագրություններ են գրել տվել իրենց այդ արշավանքների մասին: Եվ այդ արձանագրությունների մեջ շատ տեղեկություններ կան Հայաստանի վերաբերյալ:

Գիտենք, որ մ. թ. ա. III հազարամյակի երկրորդ կեսին Միջագետքում հզորացած Աքքադի թագավորները Հայքն անվանում էին Արմանի: Հետո երկար ժամանակ անցավ, մոտ 1000 տարի, և Միջագետքի արձանագրություններում Հայաստանի մասին գրեթե չկան տեղեկություններ: Եվ ահա մ. թ. ա. 13-րդ դարից սկսած Ասորեստանի թագավորները հաճախ են հիշատակում Հայկական լեռնաշխարհը, այնտեղ գտնվող հայկական տարբեր ցեղեր ու պետություններ: Բայց այս անգամ նրանք այլ անուններ են գործածում: Ինչպես նախորդ զրույցից գիտենք, այդ ժամանակներում Ասորեստանի թագավորները Հայաստանը անվանում էին **Նաիրի**: Խեթերի թագավոր Թուդհալիա IV-ի Ասորեստանի Թուկուլտի-Նինուրտա I թագավորին գրած

Ãամակում հիշատակվում է Հայքը՝ խեթական Հայասա ձևով: Իսկ Թուկուլտի-Նինուրտան իր նամակում Հայասայի փոխարեն նույն երկիրը կոչում է **Նաիրի**: Պարզ է, որ այդ ժամանակաշրջանում ասորեստանցիները Հայաստանը կոչում էին Նաիրի:

Որոշ գիտնականներ այն կարծիքն են հայտնել, որ Նաիրի նշանակում է ջրերի կամ լճերի երկիր: Իրոք, ինչպես գիտենք, հին Հայաստանի տարածքում կարևոր տեղ էին զբաղեցնում երեք մեծ լճերը՝ Վանա, Սևանի, Ուրմիո, որոնց այն ժամանակ ծով էին անվանում: Ապա, ասորեստանցիների համար կարևոր էր, որ Հայաստանից էին սկիզբ առնում Միջագետքի երկու հզոր գետերը՝ Տիգրիսն ու Եփրատը, որոնք կյանք ու բարիք էին տալիս Ասորեստանին:

Մեզ հայտնի արձանագրությունների մեջ առաջինը հենց Թուկուլտի-Նինուրտան է գործածել Նաիրի անունը: Նա Ասորեստանում թագավորել է մ. թ. ա. 1243—1221 թվականներին և իր թագավորության սկզբում մեծ զորքով արշավել է նախ խուռիների (շուբարիների) դեմ, ապա դեպի Նաիրի-Հայք: Ահա Հայքում նրա մղած պատերազմի մասին պատմող մի արձանագրությունից հատված. «Ես իմ գերազանց ուժով անցա հզոր լեռները, ուր ճանապարհներ չկային, և որտեղի կածանները մինչ այդ ծանոթ չէին ոչ մի թագավորի, և հետո Նաիրի երկրի (Հայքի) 43 թագավորներ հանդուգն կերպով շարժվեցին իմ դեմ ճակատամարտ տալու: Ես նրանց հետ պատերազմեցի, նրանց հաղթեցի, նրանց արյունով ես լցրեցի լեռների ձորերն ու զառիթափերը: Նրանց բոլոր երկրները ես իմ լուծին ենթարկեցի և նրանց վրա մշտական հարկեր դրեցի»: Արձանագրությունների մի քանի այլ տեղերում էլ ասված է, որ թագավորը հպատակեցրել է ամբողջ Նաիրի-Հայքը:

Այսպես, Հայքը, որ կարողացավ իր անկախությունը պահպանել Խաթթիի դեմ պատերազմելով, հաղթանակներ տարավ խեթերի հզոր բանակի դեմ, պարտվեց Ասորեստանից: Պատճառն այն էր, որ Խաթթիի դեմ հայերը կանգնած էին իրենց միասնական պետությամբ և հակառակորդի դեմ դուրս էին բերում հզոր բանակ, իսկ Ասորեստանին Հայքը դիմադրում էր արդեն մասնատված: 43 հայկական մանր թագավորություններ էին դուրս եկել Ասորեստանի միասնական, լավ զինված ու մարզված բանակի դեմ: Հայերի բանակը չուներ միասնական հրամանատարություն: Այդպիսի բանակը թույլ է լինում:

Հայքի թագավորների մի մասին Թուկուլտի-Նինուրտան շղթայակապ բերեց Աշուր մայրաքաղաքը և ստիպեց, որ իրենց Աշուր աստծու տաճարում երդում տան Ասորեստանին միշտ հավատարիմ մնալու մասին:

Սակայն, ինչպես երևում է հետագա արձանագրություններից, հայերը շատ էլ հավատարիմ չեն մնացել իրենց երդումին, և հայոց անջատ իշխանությունները ու թագավորությունները հաճախ իրենց անկախ են ըզգացել: Դրա պատճառներից էր նաև այն, որ Ասորեստանում դավադրություն եղավ Թուկուլտի-Նինուրտայի դեմ, նրան սպանեցին, և Ասորեստանը միաժամանակ շատ թուլացավ:

Մ. թ. ա. 1115 թ. Ասորեստանում գահ բարձրացավ Թիգլաթպալասար թագավորը, որն իշխեց շուրջ 30 տարի: Նա կարողացավ վերականգնել Ասորեստանի հզորությունը և նորից նվաճեց շրջակա երկրները: Նա կրկին հնազանդեցրեց խուռիներին, որոնք հայերի դաշնակիցներն էին դարձել: Նվաճեց կասկերին և այլ ցեղեր: Նա հարձակվեց նաև Մեծ Հայքի հարավային աշխարհի՝ Աղձնիքի (կամ Ալզիի) վրա. այստեղ այդ ժամանակ սկսել էին իշխել փռյուգացիները, որոնց այն ժամանակ մուշկ էին անվանում (Փռյուգիան գտնվում էր Փոքր Ասիայի հյուսիս-արևմուտքում):

Հերթը հասավ ամբողջ Հայքին: Այդ ժամանակ հայկական մի շարք թագավորներ և իշխաններ Ասորեստանին այլևս հարկ չէին վճարում ու չէին ենթարկվում: Եվ Թիգլաթպալասար Առաջինը իր թագավորության 3-րդ տարում Նաիրի-Հայքի դեմ մի այնպիսի մեծ արշավանք սկսեց, որպիսին մինչև այդ մեր երկիրը չէր տեսել: Դրանից հետո նա էլի երկու անգամ այդպիսի մեծ արշավանք կատարեց Հայքի դեմ:

Այս թագավորը փորագրել է տվել իր իշխանության ժամանակաշրջանի տարեգրությունը: Եվ ահա հնադարյան սեպագրերը պատմում են նրա երեք մեծ արշավանքների մասին: Հիշվում են երկիր Նաիրիի հայկական շատ ցեղեր, քաղաքներ, լեռներ, գետեր: Դրանց մի մասի անունները այժմ անծանոթ են, քանի որ անցել է մոտ 3000 տարի, հին անունների մի մասն էլ, թեև ասուրաքաքելական լեզվով է գրված, բայց ծանոթ է հայ պատմիչների գրքերից: Օրինակ, կա Դայաենի, այդպես ասուրաքաքելերեն անվանում էին Մեծ Հայքի Տայոց աշխարհը՝ Տայքը: Կամ կա Մուսրու, որ Մուշն է, կա Խունուսու, որ Խնուսն է և այլն:

Արձանագրություններից մեկում գրված է.

«Նաիրի երկրների 23 թագավոր իրենց երկրներում միացրին մարտակառքերը և զորքերը՝ ջոկատներով, և ելան իմ դեմ պատերազմ ու ճակատամարտ տալու»: Ապա իմանում ենք, որ հայերը պարտվել են Ասորեստանի բազմահազարանոց բանակից: Հետո, ինչպես արձանագրությունն է պատմում, 60 հայկական ցեղեր են հարձակվել Թիգլաթպալասարի զորքի վրա և դարձյալ պարտվել են, հակառակորդին թողնելով 120 մարտակառք:

Թիգլաթպալասարն իր առաջին արշավանքը սկսել է Հայքի հարավից և պատերազմելով շարժվել դեպի հյուսիս ու հասել Տայքին: Հետո գնալով ավելի դեպի հյուսիս՝ կանգ է առել Սև ծովի ափերին, Ճորոխ գետի մոտ: Սև ծովը թագավորն իր այդ արձանագրության մեջ կոչում է Վերին ծով: Այսպիսով, մենք իմանում ենք, որ այն ժամանակ Նաիրի-Հայքը հասնում էր մինչև Սև ծովի ափերը:

Երկրորդ ու երրորդ արշավանքների ժամանակ էլ Թիգլաթպալասարի զորքերը մի շարք արյունալի ճակատամարտեր են տվել հայերի դեմ: Երրորդ արշավանքի ժամանակ նրա դեմ դուրս են եկել 30 հայկական թագավորներ ու իշխաններ, բայց դարձյալ պարտվել են: Արձանագրության մեջ այդ հայ թագավորների մասին Թիգլաթպալասարը գոռոզաբար գրել է. «Նրանց քթերից օղեր անցկացրի և որպես եզներ բերեցի իմ Աշուր քաղաքը»: Ասորեստանի զորքը երրորդ անգամ կարողանում է հասնել Սև ծով: Թիգլաթպալասարը հազարավոր հայ գերիներ, նաև մեծ քանակությամբ անասուններ, ձիեր, այլ հարստություն է տանում Ասորեստան: Նա լինում է նաև Վանա լճի ափին:

Հարց է առաջանում՝ ինչո՞ւ է Թիգլաթպալասարը երեք անգամ արշավել Հայքի դեմ: Պարզ է՝ հայերը պարտվելով, նոր զորքեր են հավաքել, կրկին չեն ենթարկվել Ասորեստանին, հարկերը չեն տվել: Բայց հայկական անջատ իշխանությունները ոչ մի կերպ չէին կարողանում ուժեղ դիմադրություն ցույց տալ Ասորեստանին: Հերոսաբար պատերազմում էին, բայց դարձյալ ու դարձյալ Ասորեստանի միասնական բանակը հաղթող էր դուրս գալիս: Հայկական անջատ բանակները չունեին այնպիսի հզորություն, որ վերջնականապես հաղթեին Ասորեստանին: Զգացվում էր հայկական միասնական պետության անհրաժեշտությունը: Եվ շուտով ստեղծվեց այդպիսի պետություն:

(շարունակելի)





# Մեր մրցանակակիրը

**«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ 1985 ԹՎԱԿԱՆԻ ԼԱՎԱԳՈՒՅՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ՄՐՑԱՆԱԿԸ ՇՆՈՐՀՎԵՑ ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆԻՆ՝ «ՋԻՎԱՆԻ՝ ԳՈՒՍԱՆԱՑ ԳՈՒՍԱՆ» ԵՎ «ՎԱՀԱՆ ՏԵՐՅԱՆ» ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ՀԱՄԱՐ:**

# ՊՏՏԱՀՈՂՄ ԿԱՄ ՄՐՐԻԿ

**ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր



... Հորիզոնում արագորեն աճում է գզգզված ու ծվատված եզրերով մուգ մոխրագույն ամպը և կտրուկ փոխում գարնանային օրվա վառ պատկերը։ Ուժեղ պոռթկումով խուժում է սառը քամին։ Ամպի կապարե ծայրը հանգցընում է արևի վերջին շողերը, և, ասես դըրան սպասելով, դեպի ներքև է ձգվում կընճիթանման սև եղուստը, որը գալարվելով, ամպի հետ միասին սուրում է երկրի վրայով՝ մերթ կարճանալով, մերթ երկարելով։ Իսկ ներքևից նրան ընդառաջ է ելնում պտտահողմի ձագարը. նրա գրկում խելագար պար բըռնած պտտվում են ծառերի ճյուղերը, ճամփափոշին ու հնձած խոտը... Մի քանի ակընթարթ, և պտտահողմի երկու մասերը միաձուլվելով դառնում են մի սև սյուն, իրար միացնելով երկինքն ու երկիրը։ Նա առաջ է սլանում խուլ ռռնոցով՝ իր ետևից թողնելով ավերածությունների գոտի։

Այսպես են նկարագրում ականատեսները մրրիկը, տորնադոն, ցամաքային թարթառը, «սատանի քամին»։ Այս անուններով է հայտնի աhեղ ու առեղծվածային այս երևույթը, որը ժամանակ առ ժամանակ առաջանում է ամպրոպային ճակատներում։ Երբ մրրիկը գըլվոցով սլանում է ցամաքով, հսկա փոշեծծիչի պես իր ո՞րովայնն է քաշում այն ամենը, ինչ հանդիպում է իր ճանապարհին։ Ջրավազանների վրայով անցնելիս շատ հաճախ մրրիկը ծծում-կլանում է ամբողջ ջուրը՝ մերկացնելով հատակը, և որոշ ժամանակ անց ձկների ու ջրային այլ կենդանիների կարկուտ տեղալով այլ վայրերում։

Մրրկասյան ահեղ ու ավերիչ ուժի մասին առասպելանման պատմություններ են հայտնի։ Իր կատաղիությամբ հատկապես աչքի է ընկնում ամերիկյան տորնադոն։ Այն հաճախ է դիտվում Օկլահոմա, Նեբրասկա, Կանզաս նահանգներում, Մեքսիկական ծովածոցից փչող տաք և խոնավ օդի հոսանքները այդ վայրերում հանդիպում են մայր ցամաքի հյուսիսից եկող սառը և չոր հոսանքներին՝ առաջացնելով այդ զարհուրելի պըտտահողմերը։

Հսկայական, երբեմն մի քանի հարյուր մետըր հաստության պտտահողմը իր ճանապարհին կործանում է ամեն ինչ։ Զուր չէ, որ ԱՄՆ-ի շատ նահանգներում ֆերմերները գետնի մեջ հատուկ ապաստարաններ են փորում և հորիզոնում վայրագ հյուրի հայտնվելուն պես թաքնվում։

Արժե հիշատակել 1876 թվականի մայիսի 30-ի Իրվինդյան առասպելական պտտահողմը, որը պատմությանը հայտնի է իր պատճառած բազմաթիվ զոհերով։ 75 մետր երկարությամբ երկաթյա կամուրջը տափակել էր բլիթի նման։ Ֆերմերի տունը օդ բարձրա-

թղթակիցը: Սենթ-Քլեր լճում մրրիկը օդ է բարձրացրել ութ մետրանոց ջրասյուն՝ ափ նետելով տասնյակ նավակներ: Ավերվել են էլեկտրահաղորդման գծերը: Տակնուվրա եղած ավտոմեքենաները ցաքուցրիվ ընկած էին քաղաքի փողոցներում: Մրրիկները համաճախակի երևույթ են նաև Ավստրալիայի համար:





Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ցավ բնակիչների հետ միասին: Բանից անտեղյակ ֆերմերը բացելով դուռը՝ ցած ընկավ 10 մետր բարձրությունից: Մրրիկի ճանապարհին հանդիպած փայտյա եկեղեցին իր հավատացյալներով օդ բարձրացավ և մի քանի տասնյակ մետր հեռու նետվեց: Ծեպընթաց գնացքի վագոններից մեկը երկաթգծից բավականին հեռու շպրտվեց:

1934 թ. մայիսի 12-ը ԱՄՆ-ի հողագործների համար ընդմիշտ կմնա որպես մեծագույն աղետի օր: Ահռելի ուժի մրրիկը Կանզաս, Օկլահոմա և Կոլորադո նահանգներում էրոզիայի ենթարկեց գյուղատնտեսական մըշակույթի տակ գտնվող հողերը: Հողամրրիկի հետևանքով կես կիլոմետր բարձրությամբ փոշու հսկայական ամպը ընդգրկեց ավելի քան 450 հազար քառակուսի կիլոմետր տարածություն: Քամին տեղափոխեց ավելի քան 200 միլիոն տոննա հող, որոշ վայրերում լրիվ ոչընչացավ 25 սմ հաստության վարելահողը: Սա ԱՄՆ-ի պատմության մեջ ամենաահավոր տնտեսական աղետներից էր:

1925 թ. մարտի 18-ին ԱՄՆ-ի տերիտորիայով անցել է ամենազարհուրելի մրրիկը, որն իր ճանապարհին սպանել է 689 և վիրավորել 1980 մարդ: Պտտահողմը վեր է բարձրացրել շոգեքարշը և, օդում շրջելով 180 աստիճան, իջեցրել այլ գծի վրա: 1964 թվականի գարնանը Միչիգանի նահանգի հարավ-արևելյան մասով մրրիկ է անցել, ավերելով Սենթ-Քլեր լճի առափնյա Անքորբել փոքր քաղաքի ամբողջ թաղամասեր: Տասնյակ տներ լուցկու տուփի պես տափակել են, հաղորդում է ՅՈՒՊԻ գործակալության

Մեր երկրում նույնպես մրրիկներ լինում են: Հայտնի է 1904 թվականի հունիսի 29-ի մոսկովյան մրրիկը: Շուրջ 40 կիլոմետր է անցել այդ օրը ահեղ հողմը, ճանապարհին ոչընչացնելով մերձմոսկովյան մի քանի ավաններ: Մրրիկը, անցնելով Մոսկվա գետի վրայով, մի քանի վայրկյան տևողությամբ մերկացրեց գետի հատակը, առաջացնելով ջրային պատերով մի տարօրինակ խրամուղի: Մարդիկ տեսան գետի հատակը, տիղմը, նրա մեջ ընկած ջարդված ծաղկամանը, շշերը, պատռված սապոգները: Նույնպիսի ավերիչ մրրիկ է անցել Մոսկվայի մերձակայքով նաև 1951 թվականի օգոստոսին: Նրա անցած ճանապարհը 10 կիլոմետր էլ չկար, սակայն ի՜նչ ավերածություն էր գործել: Դիտելով ավերման տեսարանը, մարդիկ զարմանքով նկատում էին, որ մրրիկի գոտին շատ կտրուկ է արտահայտված. նրանից արդեն 2—3 քայլի վրա ամեն ինչ մնացել էր անձեռնմխելի: Քամու հրեշավոր ուժով տապալված ու քուղի պես ոլորված դարավոր կաղնիների կողքին կանգնած էին միանգամայն անվնաս նրբաղալար բարդիները:

Մի քանի տարի առաջ, հունիսյան մի երեկո, մրրկահողմը անցավ նաև Նովգորոդի մար-

գի Պեստովեսկյան շրջանի Պոգորելովո գյուղի «Զարյա» կոլտնտեսության դաշտերով: Ժամը 21-ին գյուղի վերևում որոտաց ամպրոպը: Անկնթարթորեն հայտնված պտտահողմը ճանկեց կանգնած «Նիվա» կոմբայնը և օդ բարձրացնելով, շպրտեց 200 մետր հեռու: Քարշակով «ԴՏ—75» տրակտորը շուռ տվեց ճանապարհի վրա, իսկ քարշակը տաշեղների վերածեց...

1981 թվականին Վորոնեժի արգելանոցի տարածքով մրրիկը անտառում մի հսկայական տարածություն ամայացրեց՝ լուցկու հատիկների պես տապալելով և այս ու այն կողմ շպրտելով հսկայական, դարավոր ծառերը: Տարերքը այս անգամ մարդկանց բնակավայրերին չհասավ:

1984 թ. ահռելի ուժի մրրիկ անցավ Իվանովոյի, Յարոսլավլի և Վլադիմիրի մարզերի վրայով: Ցիկլոնը ծագեց Սև ծովի ափին, հյուսիսային ցուրտ հոսանքների հետ օդի տաք շերտերի բախման հետևանքով: Ահարկու մրրիկը մեծ քանակությամբ շենքեր քանդեց, կառույցներ տապալեց, արմատախիլ արված ծառերը օդ բարձրացրեց փետուրի նման: Մի տեղ քամին պոկեց ջրանճնշիչ աշտարակի հըսկայական գմբեթը և, խաղալիքի պես օդ բարձրացնելով՝ շպրտեց հեռու:

Իհարկե, այդ մրրիկը ամենաուժեղների շարքը դասել չի կարելի: Նրա ձագարում քամու արագությունը կազմում էր վայրկյանում 80 մետր: Ահավոր ուժի մրրիկները ունենում են վայրկյանում 140 մետր արագություն: Նրա «կնճիթի» տրամագիծը կազմում էր 400—500 մետր, որը, քարշ գալով հսկայական տարածության վրա՝ մահ և ավերածություն սփռեց իր ճանապարհին:

Թեպետև հազվադեպ, սակայն նման մըրրիկներ Հայաստանում էլ են լինում: 1959 թըվականի հունիսի 8-ին մրրիկը հայտնվել է Թալինի շրջանի Արագած ավանի շրջակայքում և, հարձակվելով ավանի վրա՝ վնասել է 4 տուն: Օդ են թռել նույնիսկ այնպիսի ծանր առարկաներ, ինչպես նավթի 100 կիլոգրամանոց մետաղյա տակառը, թուջե խոշոր խողովակներ և այլն: Մի տան բակից հողմը երկինք է հանել շան տնակը՝ շղթայակապ շան հետ միասին:

Կործանարար ու վայրագ ուժով հանդերձ, մրրիկը հաճախ զարմանալի տարօրինակություններ է հանդես բերում:

Վլադիմիր Մեզենցևի «Հրաշքների հանրագիտարանում» կարդում ենք հետևյալ տարօրինակ դեպքերի մասին: Խուժելով ավան, մրրիկն ամբողջովին ավերել է տներից մեկը, բուֆետն ու նրանում գտնվող սպասքեղենը տեղափոխել մի այլ տեղ, առանց մի գավաթ անգամ ջարդելու: Երբեմն, երկինք հանելով սարսափից խենթացած մարդկանց, այնուհետև մրրիկը նրանց ողջ ու անվնաս «հոգատարությամբ» գետին է իջեցնում այլ վայրում: Տան վրայով անցնելիս մթնոլորտային պտտահողմը զգուշորեն պոկում է տանիքը, քշում-գցում 200—800 մետր հեռու, իսկ տան ներսում ամեն ինչ թողնում է լիակատար անվնաս վիճակում:

Շատ տարօրինակ և առաջին հայացքից անբացատրելի ուրիշ բաներ էլ է անում մըրրիկը: Զուր չէ, որ «Տորնադոն Միացյալ Նահանգներում» գրքի հեղինակ Դ. Ֆլորը կատակով նշում է. «Մեծ թվով այդպիսի արտասովոր երևույթների քննարկումից հետո, դըրանք, չնայած իրենց լիակատար ստույգությանը, սկսում են այնքան ֆանտաստիկ թըվալ, որ պատրաստ ես ամեն ինչի հավատալ, բայց ոչ նրան, որ մետաղյա կաթսան գլխարկի նման շուռ է տրվել (ներսը դեպի դուրս, դրսի կողմը՝ ներս) և չի ճաքել, կամ աքաղաղը խցկվել է կժի մեջ, ու գլուխն է միայն դուրս մնացել»: Ի վերջո չպետք է զարմանալ, որ մրրիկի դեպքում փոքրիկ տաշեղը կամ նույնիսկ փետուրն ու նուրբ բուսացողունը, ձեռք բերելով հսկայական արագություն, ծայրաստիճան վտանգավոր են դառնում և կարող են ծանր վնասվածքներ հասցնել մարդուն: Իսկ փոքր-ինչ ավելի ամուր առարկաները՝ ճյուղերը, փայտի կտորները, վերածվում են ավերիչ զենքի:

Դժբախտաբար, մենք ներկայումս մրրիկների բնույթի մասին քիչ բան գիտենք: Դա էլ հենց դժվարացնում է դրանց կանխագուշակումը: Հայտնի է միայն, որ պտտահողմը առաջանում է այն դեպքում, երբ տաք և խոնավ օդի զանգվածը բախվում է ցուրտ և չոր օդի հոսանքին: Այս դեպքում առաջանում են ճնշումների անկումներ, օդի հզոր հոսանքը առաջացնում է աչքի համար տեսանելի ավերիչ ու սարսափելի կնճիթ: Սկզբում առաջանում է տարափային ամպի պայթյունանման գոյացում՝ դեպի վեր են սլանում տաք ու խոնավ օդի հզոր զանգվածները, իսկ այդ նույն ժամանակ հարևան տեղամասերում օդի հոսանքները ներքև են իջնում: Գոյանում է մթնոլորտային հըսկայական ձագարի պես մի բան, որում տաք և խոնավ օդի հ ո ս ա ն ք ն ե ր ը պարուրաձև ընթացքով վիթխարի արագությամբ վեր են նետվում: Այսպես է առաջանում մըրրիկը: Նրա պտույտի մեծ արագությունը ծնում է հզոր կենտրոնախույս ուժեր, և պտտահող-

մի ներսում առաջանում է նոսր տարածություն, ուր օդը խիստ սառչում է, իսկ նրա մեջ գտնվող ջրային գոլորշին՝ հեղուկանում: Այդ պատճառով մրրիկը տեսնում ենք մշուշապատ ամպի տեսքով: Ահա թե որն է նրա «ներծծող գործողության» առեղծվածը:

Այսպիսի ահարկու ուժի գոյությունը չի կարող համակողմանի ուսումնասիրության նյութ չդառնալ: Բոլոր երկրներում և հատկապես այն շրջաններում, որտեղ մրրիկը հաճախակի երևույթ է, ամենօրյա դիտումներ են կատարվում այդ ահավոր բնական արհավիրքի պատճառները պարզելու և մարդկանց ժամանակին նախազգուշացնելու համար:

1984 թվականի Իվանովյան մրրիկի առթիվ սինոպտիկները շատ հանդիմանությունների արժանացան: Նրանք մեղադրվում էին, որ զինված լինելով ժամանակակից ամենակատարելագործված սարքավորումներով, ունենալով արբանյակների հաղորդած տվյալները, այնուամենայնիվ, չկարողացան մարդկանց ու կազմակերպություններին զգուշացնել այդ ահավոր բնական աղետի մասին: Սակայն հայտնի է, որ մրրիկ առաջացնող տասնյակ պատճառներից միայն մեկի առկայությունն էլ կարող է մրրիկ առաջացնել: Նշանակում է՝ մնացած ինը դեպքերում կանխագուշակողը կարող է սխալվել: Այդպիսի սխալ կանխագուշակում եղավ 1985 թվականի փետրվարի կեսերին Երևանում, երբ քաղաքի շրջանում ենթադրվում էր տաք ու խոնավ և չոր ու սառը օդային զանգվածների հանդիպում: Բարեբախտաբար, սա ինը դեպքերից մեկն էր, երբ սինոպտիկների կանխագուշակումները չարդարացան: Հասկանալի է, որ պըտտահողմի մասին յուրաքանչյուր սխալ կանխատեսում կարող է մեծ տագնապ և խուճապ առաջացնել բնակչության շրջանում (հատկապես այն վայրերում, որտեղ այդ բնական արհավիրքի ավերիչ ուժը մարդկանց հայտնի է): Այնուամենայնիվ, նման վտանգի հավանականության մասին մարդկանց անհրաժեշտ է ժամանակին տեղյակ պահել՝ օգտագործելով մասսայական ու արագ ինֆորմացիայի բոլոր ձևերը:

Ցավոք, բնության այդ ահարկու ուժերից մարդը առայժմ ակտիվ կերպով պաշտպանվել չի կարող:

Գիտնականները դեռևս ի վիճակի չեն հըսկողության տակ վերցնելու մրրիկները, երկրաշարժերը, հրաբուխների ժայթքումը: Երկիրը դեռևս երիտասարդ է: Նրա ձևավորման ու վերափոխման պրոցեսում բնական այդ արհավիրքները անխուսափելի են:




Սենյակում լսվեց կոտրված ապակու ձայն, և պատուհանի միջով սենյակ թըռավ ֆուտբոլի գնդակը: Տանտերը դուրս եկավ բակ՝ գնդակը ձեռքին, և տեսավ ինը շփոթված տղաների:

— Ո՞վ կոտրեց ապակին,— զայրացած հարցրեց նա:

— Դիման,— ասաց Անդրեյը:

— Ճիշտ չէ,— ասաց Բորիսը:

— Պատուհանը ես կոտրեցի, — ասաց Վիկտորը:

— Արեց Վիկտորը կամ Իվանը,— ասաց Գենադին:

Բորիսը ճիշտ չասաց:

— Ապակին կոտրեց Վիկտորը,— ձայնեց Եվգենին:

— Ոչ, Վիկտորը չի կոտրել,— առարկեց Ժենյան:

— Ոչ ես, ոչ էլ Վիկտորը այստեղ գործ չունենք,— ասաց Իվանը:

— Իվանը ճիշտ է, բայց Դմիտրին նույնպես մեղք չունի,— ասաց Կոստյան:

Հետագայում պարզվեց, որ տղաներից երեքը ճիշտ էին ասում: Ո՞վ էր կոտրել ապակին:




Ցելոֆանը իրենից ներկայացնում է բարակ թաղանթ, որ ստացվում է քիմիական ճանապարհով՝ ցելյուլոզից: Այն հայտնագործել է շվեյցարացի քիմիկոս և բիզնեսմեն Ժակ Բրանդենբերգերը: Ցելոֆանի մասսայական արտադրության կարգավորումը տևեց տասը տարի:

1908 թվականին Բրանդենբերգերը արտոնագրեց իր գյուտը, իսկ երեք տարի հետո սկսեց վաճառել թափանցիկ ու բարակ թերթերը: Ցելոֆանը սկզբում թանկ էր և օգտագործվում էր հուշանվերների, ոսկերչական իրերի, բարձրորակ օծանելիքների փաթեթավորման համար:

Բոլորիս լավ ծանոթ պատճենաթուղթը հայտնագործվել է գրամեքենայից առաջ: 1806 թվականին անգլիացի Ռալֆ Վեջվուդը արտոնագրեց «Նամակները և փաստաթղթերը պատճենահանելու եղանակի գյուտը»: Սարքը հնարավորություն էր տալիս բարակ թուղթը ներծծել կապույտ թանաքով, այնուհետև դնել երկու ծծանների մեջ և չորացնել: Չորացված «պատճենաթուղթը» դրվում էր թղթի տակ, գրելուց հետո ստացվում էր գրվածի պատճենը:

1820—1830 թվականներին Վեջվուդը Լոնդոնում պահում էր պատճենաթղթի պատրաստման ձեռնարկություն:

Իսկ ժամանակակից սև պատճենաթըղթերին մոտիկ պատճենաթղթեր սկսեցին արտադրել գրամեքենայի ստեղծումից հետո՝ մոտ 90 տարի առաջ:

Ինչպես հայտնի է, հովանոցը հայտնագործել են Չինաստանում և օգտագործում էին ոչ թե անձրևից, այլ արևից պաշտպանվելու համար:

Հովանոցների մասսայական արտադրությունը սկսվել է Անգլիայում՝ անցյալ դարի կեսերին: Առաջին անգամ հովանոցը անձրևից պաշտպանվելու համար գործածվել է Անգլիայում 1750 թվականին, երբ ձեռնարկատեր Ջոնաս Հենվեյը հովանոցը ձեռքին մի անձրևոտ օր դուրս է եկել Լոնդոնի փողոցներից մեկը: Քանի որ Լոնդոնում անձրևոտ օրերը հազվադեպ չեն, Հենվեյը՝ օգտվելով չինական հայտնագործության առավելություններից, սկսել է այն ամեն օր հետը վերցնել: Նրան սկսել են ընդօրինակել: Սակայն օգտակար իրը ունեցավ ոչ միայն կողմնակիցներ, այլև հակառակորդներ: Հովանոցի ամենակատաղի թշնամիները մայրաքաղաքի վարձու փակ կառքերի կառապաններն էին:

Նրանք վախենում էին, որ լոնդոնցիները անձրևոտ օրերին այլևս կառք չեն վարձի, կօգտվեն հովանոցներից:

Տասնվեցամյա աշակերտուհի Նիկոլ Բուրդինան (ԳՖՀ-ից) սահմանեց մեքենագրելու համաշխարհային ռեկորդ՝ րոպեում՝ 757 նիշ: Դա յոթ նիշով ավելի է նախկին ռեկորդից:

Իտալացի հետազոտող Էուջենիա Նատոլին ուսումնասիրում է թափառական կատուների ապրելակերպը, որոնց թիվը վերջին տարիներին ավելացել է Հռոմի փողոցներում: Նա հայտնաբերել է, որ քաղաքային ապրելակերպը հիմնովին փոխել է կատուների վարքը: Սովորաբար կատուները շրջում են մենակ կամ փոքրիկ խմբերով (հիշենք թեկուզ Քիփլինգի «Կատուն, որն զբոսնում էր ինքն իր համար»): Իսկ Հռոմի փողոցներում 30—40 կատու շրջում են միասին: Սա բացառիկ երևույթ է: Հռոմեական կատուների խմբերը կարելի է համեմատել միայն առյուծների խմբերի հետ, սակայն նրանց մոտ էլ այդ թիվը չի հասնում 30-ի:

Կոլիզեյի ավերակները վերածվել են որսատեղի այս կատուների խմբի համար: Կողմնակի կատուները չեն համարձակվում խախտել այդ տեղամասի սահմանները:

Ինդեքս՝ 77806
ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.



Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՇՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅ-ՎԱԶՅԱՆ Վ.: